# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
# № 6 ● 1985

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ





ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Ծաղկաձորյան լուսաբաց

Քչփչոց է ծաղիկների
Անտառի մեջ ու բացատում,
Իսկ վերևից թռչունների
Ծլվլոց է ներքև կաթում:

Թիթեռնիկներ հազար տեսակ,
Նապաստակներ՝ փոքր ու մեծով,
Ելել են, որ ուրախանան
Այս թարմաշունչ լուսաբացով:

Ամենուրեք շարժում ու կյանք,
Աշխույժ, զվարթ իրարանցում,
Չեն համբերում ծառերն անգամ
Եվ ճյուղերն են խինդից ցնցում:

Հետո արդեն... աքլորի պես
Շեփորներն են գիլ ղողանջում:
Թնդացնելով սար ու ձորեր
Մանուկների երգն է հնչում:

Եվ երկինքն է դառնում վրան,
Արեգակը՝ ջահ վրանին,
Ծածանելով բոցուկրակ,
Շքեղաշուք իր ծիրանին:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ





ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ

# ԹՈՒԹԵՆԻՆ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Դպրոցական աղջիկները այդ տարիներին սպիտակ ժանյակաճիտ թևքերով ու օձիքներով շրջազգեստներ էին հագնում, սև հյուսքերին թիթեռանման ճերմակ ժապավեններ էին կապում... Նրանք նոր էին ավարտել տասնամյակն ու ամաչում էին տղաներից, որոնք գողունի նայում էին իրենց ու ժպտում:

Անբացատրելի գեղեցիկ էին այդ գարնանը բոլոր աղջիկները:

Տղաները երգում էին.

**Վորոշիլովը բանակ է գնում,**

**Ովքեր ուզում են, թող գան, միանան...**

Ի՜նչ տղաներ էին: Բարձրահասակ, գեղեցիկ, սրտերը կարեկցանքով, աչքերը՝ սպասելիքներով ու երազներով լցված: Նրանց հայրերը մեկնել էին ռազմաճակատ և այլևս նամակ չէին գրում: Տղաները գնում էին վրեժ լուծելու...

Ի՜նչ տղաներ էին, բարի, գթասիրտ: Աղջիկները լալիս էին նրանց համար ու կառամատույցի ժխորի մեջ բղավում.

— Տղանե՜ր, տղանե՜ր, բարո՜վ գնաք, բարով գաք...

Ծերունենց տունը Գետառի ափին էր, փայտյա պատշգամբով, տափակ տանիքով, միհարկանի: Գարնանը և ամռանը հինավուրց թթենին տան երկինքը լցնում էր կանաչկանաչ երազներով, իսկ աշնանը ոսկեղենին տերևները կաթկթում էին նրանց տանիքի, բակի, փողոցի վրա:

Մեր թաղի բոլոր տղաներն ու աղջիկները սիրում էին այդ տունը, այդ բակը, այդ տանն ապրող բարի-բարի մարդկանց: Մայիսի վերջերին թութն սպիտակում էր, լցվում անուշահամ հյութով: Դա երևի մեր քաղաքի միակ թթենին էր, որի տերերը բոլորին հրավիրում էին իրենց տուն, որ գան, բարձրանան ծառը, թութ անուշ անեն: Առավոտից մինչև իրիկուն, ճնճղուկների երամի պես աղմուկով, ճիչերով, կանչերով ծառի ճյուղերին թառում էին մեր թաղի տղաներն ու նայում փողոցով արագ անցնող աղջիկներին...

— Համմիկին ճանաչու՞մ ես,— հարցրեց Ծերունը:

— Ո՞ր Համմիկին:

— Էն, որ ծիծաղում է՝ այտերը փոս են ընկնում:

— Մեր հարևանն է:

— Շատ ուրախ եմ, որ ձեր հարևանն է... Հա, էս թութը կտաս նրան...

— Ասեմ դու՞ ես ուղարկել...

— Չէ՜, չէ՜... ուրի՜շ բան ասա... Մի բան հնարիր... Ուզում ես, ասա՝ անհայտ մի մարդ քեզ կախարդական թութ է ուղարկել: Չէ՜, կվախենա, ո՜չ մի բան մի ասա:

Ծերունը զամբյուղի թութը տերևներով ծածկեց, որ փոշի չնստի վրան, տվեց ինձ, ու ես տարա Համմիկին:

— Համմի՜կ, թու՜թ կեր, շատ քաղցր է,— ասացի ու նրան մեկնեցի կանաչ շյուղերից հյուսած զամբյուղը:

— Ծերունենց թու՞թն է:

— Ո՛չ: Մի անծանոթ մարդ տվեց և ասաց՝ ով ուտի այս թութը, իրեն շատ լավ կզգա: Կախարդական թութ է:

Համմիկը ժպտաց, ու այտերի փոսիկները խնդությամբ լցվեցին:

— Իրոք, ես ինձ շատ լավ զգացի... Իրոք, սա՞ կախարդական թութ է... Ծերունենք շուն ունե՞ն:

— Չունեն:

— Ուրիշ ի՞նչ ասաց Ծերունը:

— Ասաց... չգիտեմ: Ասաց՝ թող թութ ուտի:

Իրիկուն էր. մենք նստել էինք Համմիկենց տան քարե աստիճանների վրա, թութ էինք ուտում ու մտածում, թե մեր տղաները ո՞նց են մեկնելու ռազմաճակատ, ո՞նց են կռվելու ֆաշիստների դեմ:

— Տասներորդ «բ»-ի բոլոր տղաները կամավոր են գրվել... Գնում են: Ծերունն էլ:

Համմիկը ներս գնաց, սքանչելի ժանյակներով զարդարված աբրեշումե մի թաշկինակ բերեց, որի մի անկյունում նամակը բերանին, թևատարած աղավնի էր ասեղնագործված, տվեց ինձ ու ասաց.

— Կտաս Ծերունին, կասես... չէ՛, ոչինչ մի՛ ասա:

— Չասե՞մ՝ դու ես տվել:

— Ո՜չ, չասես... Մի բան հնարի՜ր... ասա՜՝ հիշելու համար ինչ-որ մեկը ուղարկել է... չէ՜, չէ՜, ոչինչ չասես,— Համմիկը վերցրեց Ծերունի ձեռքով հյուսած կանաչ զամբյուղն ու գնաց:

Երբ ես թաշկինակը տվեցի Ծերունին, նա համբուրեց ինձ ու ասաց.



— Ես քեզ նամակ կգրեմ, ախպերի՛կս:

— Ավելի լավ է նրան գրես:

— Ո՛չ, ո՛չ: Կուղարկեմ քեզ, դու կտանես կտաս նրան: Թող ոչ ոք չիմանա: Ոչ ոք,— շունչն հազիվ տեղը բերելով ասաց Ծերունը ու Համիկի տված թաշկինակը դրեց ծոցը:

Չգիտեմ ինչու այդ պահին ես ուզեցի լաց լինել, բղավել, բողոքել, բայց ձայն չը հանեցի:

— Ուշադի՛ր կլինես, ախպերի՛կս, Համիկին ուրիշ տղաներ հանկարծ բան-ման չասեն, իսկ երբ ստանաս իմ գրած նամակները, կտանես նրան կտաս ու կասես... Չէ՛, չէ՛, ոչինչ չասես, ի՞նչ կարիք կա: Նամակը կտաս իրեն ու կգնաս: Մորս էլ չասես, որ ես Համիկին նամակ եմ գրում, թող ոչ ոք չիմանա...

Ես ու Ծերունը պառկած էինք իրենց տան տանիքին ու այնքան նայեցինք կապտաջինջ երկնակամարում թևածող ծիծեռնակներին, մինչև որ նրանք ձուլվեցին երկնի անհունին, հալվեցին մութի մեջ ու կորան...

Աղջիկները կայարան էին եկել տղաներին ճանապարհելու:

Կառամատույցում էինք: Ծերունն ու Համիկը կանգնել էին դեմ-դիմաց, գլուխները հակել կրծքներին ու չէին նայում իրար, չէին խոսում: Երբ գնացքը շարժվեց, Ծերունը ձեռքը հպեց Համիկի մազերին ու իրեն նետեց վագոնը: Համիկը գրկեց ինձ ու համբուրեց:

— Դու իմ եղբայրն ես, իմ փոքր եղբայրը,— ասաց նա ու լաց եղավ մեծ-մեծ արցունքներով:

Շոգեքարշը սուլեց: Գնացքը Ծերունին տարավ:

Գարնանը Գետառի ափին նորից կանաչեց հաստաբուն թթենին: Մեր թաղի բոլոր աղջիկներն ու կանայք, երեխաներն ու ծերերը եկան, հավաքվեցին ծառի մոտ, լուռ նայեցին իրար երեսի ու հառաչեցին: Նրանցից ոչ ոք չէր ուզում խոսել: Հովն օրորեց ծառի կատարը, տերևները խշշացին, ու բոլորին թվաց, թե ծառը լալիս է: Նրանք հայացքները բարձրացրին վեր: Ծառի ճյուղերից մեկի վրա Համիկը կապել էր իր ժապավենը: Ծառը դարձել էր սգավոր...

Մեր թաղի տղաներից շատերը չվերադարձան: Ես չեմ ուզում նրանց անունները կարդալ սև քարերին դաջված, նրանց եղբայրական ոչ մի գերեզմանոցում չեմ փընտրում:

Երբեմն հեռու-հեռվից ես լսում եմ մի երգ: Ես ճանաչում եմ Ծերունի ձայնը: Այդ նա է, իմ մեջ մնացած նրա ձայնն է:



# ՈՂՋՈՒՅՆ, ՓԱՌԱՏՈՆ




## Վիեննա 1959

Երիտասարդության և ուսանողների համաշխարհային 7-րդ փառատոնին 18 հազար երիտասարդ էր եկել աշխարհի 112 երկրից: Փառատոնի նշանաբանն էր «Հանուն խաղաղության և բարեկամության»:

Փառատոնին Սովետական Միությունից մասնակցում էր 800 պատվիրակ: Առաջին անգամ էր սովետական երիտասարդների այդպիսի մեծ խումբ մեկնում կապիտալիստական երկիր: Բայց այստեղ էլ, ինչպես նախորդ փառատոներում, սովետական երիտասարդները նվաճեցին բոլոր մասնակիցների սերն ու հարգանքը:

«Մեսսե-Պալաստի» դահլիճներում բացվեց աշխարհի երիտասարդների ստեղծագործությունների ցուցահանդեսը. գեղանկարչության, քանդակագործության, գրաֆիկայի, խեցեգործության, կիրառական արվեստի ավելի քան 1500 գործ:

Փառատոնի մասնակիցները հանուն խաղաղության ցույց կազմակերպեցին, Դանուբի ափին, կամուրջի մոտ բոցավառվեց խաղաղության խարույկը: Իսկ Մաուտհաուզենի համակենտրոնացման ճամբարի մուտքի մոտ երիտասարդները ծառեր տնկեցին:




## Հելսինկի 1962

Ֆինլանդիայի մայրաքաղաքում իրենց հերթական՝ 8-րդ փառատոնին էին հավաքվել 137 երկրների 18 հազար մասնակիցներ շուրջ 1500 երիտասարդական կազմակերպություններից: Առաջին անգամ էր փառատոնը ներկայացնում երիտասարդական կազմակերպությունների այդպիսի լայն շրջանակ:

Փառատոնի օրերին այդ կազմակերպությունների ղեկավարները քննարկեցին խաղաղության և ազգային անկախության հարցերը:

Առաջին անգամ Հելսինկիի փառատոնում բացվեց Միջազգային ակումբ, որի այցելուներին առաջարկվում էին զանազան հետաքրքիր խաղեր և մրցույթներ՝ «Ի՞նչ գիտես այլ երկրների երաժշտական բանահյուսության մասին» թեմայով: Փառատոնային ուսանողական ակումբում տեղի ունեցավ կրթության դեմոկրատացման և ռեֆորմի հարցերի շուրջ առաջին սեմինարը: Իսկ Սեուրասաարի կղզում մեծ տոնահանդեսի ժամանակ վառվեց «Բարեկամության խարույկը»:




## Սոֆիա 1968

Երիտասարդության և ուսանողների 9-րդ փառատոնին մասնակցեց 137 երկրների 18 հազար ներկայացուցիչ: «Հանուն համերաշխության, խաղաղության և բարեկամության»— այսպիսին էր փառատոնի նշանաբանը:

Եթե այսօր, տարիներ անց, փառատոնի մասնակիցներին հարցնենք, թե ո՞ր հանդիպումներն էին ամենահիշարժանը, նրանք բոլորն էլ, անշուշտ, կնշեն վիետնամցի երիտասարդների հետ հանդիպումները: Փառատոնի իսկական հերոսներն էին նրանք, շատերը Սոֆիա էին եկել ուղիղ ռազմաճակատից, որտեղ կռվում էին ամերիկյան զավթիչների դեմ՝ հանուն հայրենի երկրի ազատության: Փառատոնի մասնակիցների նվերներով Վառնայից հեռավոր Հայֆոնգ մեկնեց բարեկամության նավը:

Սովետական երիտասարդներն ակտիվորեն էին մասնակցում փառատոնի բոլոր՝ քաղաքական, մշակութային և մարզական միջոցառումներին: 200 սովետական մարզիկներ մասնակցեցին մարզական ծրագրի 14 ձևերին, գեղարվեստական խմբերը 135 համերգ տվեցին, հանդիպումներ ունեցան ազգային փառատոնային պատվիրակությունների հետ:






# Արևի շողերն անուններ ունեն

Բարձր-բարձր երգելով մի աշակերտ էր դուրս գալիս դպրոցի շենքից: Առաջին անգամ էի լսում այդ երգը: Չէի ուզում տղային ընդհատել, բայց հարկավոր էր իմանալ դպրոցի պիոներսենյակի տեղը: Մոտեցա:

— Այդ ի՞նչ երգ ես երգում,— հարցրի նրան:

— Մեր փառատոնի երգն է: Բարձր դասարանցիները երգի մրցույթ են անցկացնելու: Կարծում են, թե մենք՝ հինգերորդցիներս, չենք կարող մրցույթին մասնակցել: Բայց մենք էլ ենք գտել երգի բառերը և սովորել:

Նա ցույց տվեց պիոներսենյակի տեղը: Մինչև պիոներսենյակ հասնելը հարկավոր էր անցնել երկար միջանցքով: Դասասենյակներից գալիս էին երգ-երաժշտության հնչյուններ: Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվան № 19 միջնակարգ դպրոցը երգեհոնի էր նմանվում: ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար Սուսաննա Դավթյանը բացատրում է, որ երգի մրցույթը նվիրված է երիտասարդության և ուսանողների համաշխարհային 12-րդ փառատոնին: 8-րդ, 9-րդ և 10-րդ դասարանցիները կատարելու են փառատոնին նվիրված երգը: Բացի այդ պետք է կատարվեն նաև հաղթանակի 40-ամյակին, խաղաղությանը, բարեկամությանը նվիրված երգեր: Սա մրցույթի պարտադիր ծրագիրն է: Պարտադիր... Բայց այս բառն այնքան էլ բնորոշ չէ այս դպրոցի պիոներական ու կոմերիտական կյանքին: Մի համընդհանուր անկեղծ ոգևորություն կա դըպրոցում, ոգևորություն և վստահություն: Կա նաև մի թաքուն պայքար, թե ով կլինի երգի մրցույթի հաղթողը:

Դպրոցում շատ միջոցառումներ են մրցույթի ձևով կազմակերպվում: Դա ավելի է ոգևորում և պարտավորեցնում աշակերտներին, դպրոցի մթնոլորտն էլ իսկական աշակերտական է դառնում, գործը կատարվում է որակով, և ետ մընացողներն էլ ձգտում են հասնել առաջատարներին: Իսկ մրցույթի հաղթողները որոշվում են անաչառորեն: Վերջերս փառատոնին նվիրված պլակատների

մրցույթի արդյունքները ամփոփելիս դպրոցական ժյուրին (որի կազմում կային նաև ուսուցիչներ) գտավ, որ... բոլոր դասարանների պատրաստած փառատոնային պլակատներն էլ լավն են: Բայց դա չէր բավարարել աշակերտներին: Հավաքվել էին ու իրենք որոշել, որ ամենալավ պլակատները պատրաստել են 9-րդ և 10-րդ «գ» դասարանները:

Երբևէ լսած կա՞ք, որ արեգակի շողերն անուններ ունենան: Իսկ 9-րդ «գ»-ի պլակատի վրա նկարված արևի շողերից յուրաքանչյուրին տրված էր մի անուն. Խաղաղություն, Բարեկամություն, Երջանկություն և այլն: Այդ շողերից հալվում էր պլակատի ձախ անկյունում կուչ եկած սև ռումբը:

Փառատոնի առթիվ շատ դպրոցներում կազմակերպվել են խաղաղության ֆաբրիկաներ: Կրուպսկայայի անվան № 19 միջնակարգ դպրոցի աշակերտներն էլ են ստեղծել իրենց խաղաղության ֆաբրիկան, որտեղ մոսկովյան փառատոնի էմբլեմի ձևով գեղեցիկ պայուսակներ են պատրաստում և ուղարկում տոնավաճառ: Ստացված դրամը կհատկացվի խաղաղության ֆոնդին: Մասնակցելով խաղաղության ֆաբրիկայի աշխատանքներին, աշակերտները ստանում են աշխատանքային դաստիարակություն:

Բայց սա դեռ բոլորը չէ: Մոսկովյան փառատոնի նկատմամբ երեխաների հետաքրքրությունն այնքան է մեծացել, որ նրանք սկսել են սովորել փառատոնային շարժման ողջ պատմությունը: Եվ որ ամենահաճելին է՝ տարբեր տարիների փառատոների մասին ինֆորմացիան պատրաստում են իրենք՝ աշակերտները, և իրենք էլ սովորեցնում են իրենց ընկերներին, համադասարանցիներին:

Դպրոցի տարածքից դուրս եմ գալիս: Գեղեցիկ են մեր քաղաքամայր Երևանի փողոցները. բազմագույն ծաղիկներ, ծաղկած ծառեր: Մի՞թե աշխարհում կան մարդիկ, որ չեն սիրում ծաղիկներ, ծաղկած ծառեր: Հավատս չի գալիս:

Եվ որտեղի՞ց այդքան գեղեցիկ ծաղիկներ, մտածում ես ու հանկարծ... հանկարծ հիշում ես խաղաղության, երջանկության, բարեկամության մասին, որ արևի շողեր դարձած իջնում են հողին և օգնում, որ բացվեն ծաղիկները, որ ծաղկեն խաղաղության փառատոների ծաղիկ-էմբլեմները...

**ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ**





**ՋՈՒԼԻԵՏ ՄԱՏԻՆՅԱՆ**

# Միակ պատերազմը

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մանուկ ժամանակ միշտ մտածում էի հորս գտնելու, հայր ունենալու մասին: Բայց դա անկարելի մի ձգտում էր, որ անարև օրվա պես ապրում էր իմ մեջ: Այդ մասին երբեք չպատմեցի ոչ ոքի, անգամ մորս: Դա միակ բանն էր, որի մասին քարի պես լռում էի:

Մեր թաղը լի էր անկտուր տներով, որտեղ գիշերները սարսափները ծկլթալով ձնագնդիկ էին խաղում՝ պատերազմ էր:

Մայրս գնում էր հացի... Իսկ ես չոքեքթաթ դուրս էի գալիս բակ և քաշչալ քարերից բռնում, որ չընկնեմ: Այդպես մեծանում էի: Դժվար մեծացա, ուտելու բան չկար, և բոլոր անարև կտուրները բնակվեցին իմ մեջ, իմ մարմնի ամեն կտորի մեջ: Նրանք չէին քնում, ինձ տանում էին ամպեղեն քարաժայռերի վրա բազմած անիրական աշխարհներ:

— Դու պետք է շատ խելոքանաս,— պարտադրում էր մայրս՝ շոյելով գլուխս:

Հոգսից դյուրագրգիռ՝ նա կարգին չէր ժպտում, և ես կարոտ էի մնում ծիծաղկոտ շատ բաների: Ո՞նց ժպտար, երբ կտուրից ձնհալի ջուրը ներծծվել էր առաստաղի ու պատերի մեջ և պատերի վրա սատանայական ծամածռություններ նկարել: Ես լռակյաց էի:

— Ծանր բնավորություն ունի,— ասում էին մորս: Իմ լռությունը նման էր անջուր ջրհորի, որի մեջ գցած պատահական քարը խուլ զնգում էր: Մինչև հիմա էլ ատում եմ դատարկ լռությունը:

Հեռավոր մի օր այդ լռությունը ինձ համար դարձավ հենակների թխկթխկոց. Նունեի հայրն էր: Թխկթխկոցը ինձ տանում էր իրական ճամփեքով, և Հիտլերին ուղղված աղմուկներն ու անեծքի ձայները փակում էին կոպերս:

Գյուղը լի էր այրի կանանցով ու որբերով, սև թղթերով, գյուղամիջյան ռադիոյի անողոքությամբ:

Վերջապես ռադիոն ուրախությունից հաղթական թռչկոտում էր իր բարձր սյան վրա:

Հետո եկավ սեպտեմբերը, հաղթանակած երկրի առաջին սեպտեմբերը: Մայրըս ինձ համար պայուսակ գնեց: Ջինվորական բրեզենտե պայուսակ էր, որի մեջ տեղավորված էին «Որբերի օգտին» տրվող ֆոնդի գրքերից:

Թխկթխկոցը, որ լցվել էր իմ լռության մեջ, գալիս էր իմ հետևից դեպի դըպրոց: Եվ հանկարծ իմ մեջ բնակվող հույսը նորից արթնացավ: Այն հույսը, որի մասին քարի պես լռում էի: Նունեն տըրտում ուրախությամբ նայեց ինձ. քեռի Գրիշայի հենակները ծանր էին... և քարքարոտ ճամփեքով դժվար էին առաջանում: Կանգ առանք: Նա Նունեի ձեռքի դաշտային ծաղիկները բաժանեց երկու մասի և մեկը մեկնեց ինձ՝ վերցրու և լավ սովորիր:

Իմ ուսերի վրա կարծես կարևոր, շատ կարևոր բան ավելացավ: Թեթևության նման մի բան: Այդ օրը ես հրաժեշտ տվի իմ մանկությանը: Հայրս ինձ պատկերանում էր քեռի Գրիշայի պես հենակներով: Այդ օրվանից ես կապվեցի քեռի Գրիշային, հոգուս մեջ նրան ինձ հայր ունենալու կարոտով: Նա ինձ ծաղիկ տվող առաջին մարդն էր: Հետո նա թփթփացրեց ուսս և ասաց՝ դու արդեն մեծ ես: Նա հաշվի նստեց իմ իրական զգացումների հետ, և ես երախտապարտ էի նրան: Ես պետք է սովորեի՝ իմ թիկունքում անընդհատ ունենալով հենակների թխկթըխկոցը, որպես մանկությանը հրաժեշտ տալու և հաղթանակի խորհրդանիշ: Ես երջանիկ էի մանկությանս հետ իմ հրաժեշտի պահին: Այն պահին, երբ նա իրեն այնպես պահեց, որ ես ինձ մեծ ըզգացի... Մեր բակի՝ մանկությանս բակի քարերը մեծացան իմ աչքին: Ես հասկացա, որ մեծանալուս հետ արևներն էլ են մեծացել, սակայն ոչ մի արև չի կարող փոխարինել հորը: Դա միակ պատերազմն էր, որ համառորեն մնաց մեջս:



# Բարի լույս

— Բարի լու՜յս, մարդի՛կ,
— Իմ հարազատներ,
— Բարի լու՛յս, ծաղի՛կ
Իմ սիրուն,
— Բարի լու՜յս, արտու՛յտ,
Իմ սիրուն,
— Բարի լու՛յս, շնի՛կ
Իմ հավատարի՛մ:
— Բարի լու՛յս, մայրի՛կ,
Իմ անգի՛ն, իմ անուշի՛կ:
— Բարի լու՛յս բոլորին:

ԼԻԱՆԱ ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ
Երևանի № 152 միջն.
դպրոցի 6-րդ դաս.



ՀՌԻՓՍԻՄԵ ՄԱՐԳԱՐՅԱՆ
Երևան, № 56 դպրոց, III դաս.

«ՀԱՐՍԱՆԻՔ» ՄԱՅԱ ԿԱԺՈՅԱՆ, Լենինական, 9 տ.





«ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ»
ՀՐԱՅՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Մասիս ավան, 6-րդ դաս.

«ՀԱՅՐԻԿԻՍ ԴԻՄԱՆԿԱՐԸ»
ԱՐՄԵՆ ՔԱԼԱՇՅԱՆ

«ԶԲՈՍԱՆՔ»
ԱՐՄԵՆ ԱԼՈՅԱՆ Լենինական, 9 տ.





ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# ՋԻՎԱՆԻ

## Գուսանաց գուսան

Կարգախ... Մի գողտրիկ գյուղ պատմական Գուգարաց աշխարհի Կապույտ լեռնապարի հովիտներից մեկում, ուր բարեբախտաբար տակավին կանգուն է Ջիվանու պապենական տունը:

Տան տերն է աշուղի հորեղբոր սերնդից Պավլուշ Զաքարի Բենգոյանը: Նա այցելուներիս հրավիրում է ներս...

Մի ավանդական հայկական տուն, թոնրատուն ու մառան, գոմ ու գոմօդա՝ հայկական դասական ձևով:

Այս տանն է ծնվել Ջիվանին, գոմօդայում է նա՝ հայացքը մեծերի բերանին, երգ ու հեքիաթներ լսել:

Գոմում մի ջրհոր կա:

Տանտերը ուղեկցում է մեզ դեպի ջրհորը, բացում է խուփն ու վառում ջրհորի մեջ կախված էլեկտրական լամպը:

Ջուրը մաքուր է կռունկի աչքի պես:

Ինձ թվում է՝ հենց այստեղից է սկսվում աշուղի երգի ակունքը:

— Ջուրը խորքից է գալիս,— ասում է Պավլուշը և ցույց տալիս հարավարևմըտյան կողմը:

Ես մտովի շարունակում եմ տանտիրոջ ձեռքի ուղղությունը Հայաստանի քարտեզի վրա ու գնալով հասնում Բյուրակնյա լեռները...

**Աշուղն ինքն էլ է երգել.**
**Բյուրակնյա սարից կբխա,**
**Կոհակների մեջ հոգի կա,**

**Դրախտի միջից դուրս կուգա,**
**Ա՜խ, իմ հայրենիքիս ջուրը:**

Հանրագիտարանային տեղեկությամբ կարգախցիների նախնիները եկել են անցյալ դարի երեսունական թվականներին, Կարնեցոց գաղթի հետ, Էրզրումի Ալվար, Օկոմ, Մեծ ու Փոքր Դու գյուղերից...

Իսկ ո՞ր գյուղից է եղել Բենգոյենց Գասպարը՝ Ջիվանու պապը:

Դժվար է ասել, հավանաբար այն գյուղից, որն ավելի մոտիկ է Բյուրակնյա լեռնապարին...

Բյուրակնյա լեռների աղբյուրներից է գալիս նաև Ջիվանու երգը՝ հայ երգի մայր Արաքսը սնող հորդառատ վտակներից մեկը:

## Երգի նախերգը

Գոմօդայում, օջախի երկու կողմը ձգվող թախտերի վրա ամեն իրիկուն, անասուններին կեր ու ջուր տալուց հետո, հավաքվում էին մարդիկ ու լսում բանասացին:

Բանասացն էլ բանասացին պատշաճ՝ ըսկըսում էր: Որտեղ պատմություն էր՝ պատմելով էր գնում, որտեղ երգ՝ երգելով...

Բանասացն էլ հաճախ աշուղ Սիային էր:

Պատմում ու երգում էր աշուղ Սիային, ընտանիքները հափշտակված լսում էին: Երգում էր աշուղ Սիային ու հափշտակված լսում էր նրան Ջիվանին:

— Թե մե իդման սազըմ ձեռս ընկնիր...

Ամառային շոգ օրվա միջով բոռերից խրտնած հորթերը վազում են դեպի լիճը:

Անիծված հորթերը ժամանա՞կ գտան փախչելու:

— Երթամ մե բանըմ եղնի, կորչին՝ հորեղբորս կնոջ ձեռքեն չեմ պրծնի,— ցավագին տագնապով մտորում է Ջիվանին ու աչքն ու ունկը մի կերպ աշուղից պոկելով՝ վազում է հորթերի ետևից:

Ու մինչ հորթերը ետ է բերում, աշուղը գյուղից գնում է:

Տղան նայում է աշուղի ետևից: Աչքերի մեջ մեծանում է աշուղի շքեղ ջութակը, մեծանում, գեղեցկանում ու կախվում է երկնքից:

— Գնա՛ գոմ, ձիու պոչից կտրիր մազ ու շինիր սազ...— ներքին մի ձայն հուշում է նրան:

Տախտակի կտորին նա տալիս է սազի տեսք, վրան իր իսկ ձեռքով զարդանախշեր հանած թիթեղի կտոր մեխում և ապա ձիու պոչի մազերը ձգում, կապում է վրան, ու նըվագարանը պատրաստ է:

## Առաջին երգ

Վեց տարեկան էր՝ զրկվեց հորից: Մայրն էլ տղային թողած հորեղբոր խնամքին՝ հարս գնաց հարևան Տադեշ գյուղը:

Հորեղբոր կինն էլ բարի չէր:

— Սազերը տար լիճ, հետո հորթերը տար բլրակողը...

Վեցամյա մանչուկը սազերը տարավ լիճ ու ետ եկավ, հորթերին քշեց գյուղի մեջքին կանգնած բլուրն ի վեր:

Երևաց Տադեշ գյուղը, որտեղ մայրն էր ապրում: Տղան շատ էր կարոտել մորը: Ի՞ն անեի, կարոտից լաց լինե՞ր... Դա քիչ է Մախաղի միջից հանեց իր շինած սազ Կնտնտոցը քսեց լարերին. տխուր նվագ հը չեց: Մեղեդին իր ներսից էր, հետը բառ դուրս քաշեց.

**Ջուխտակ շամամներդ դրախտ ծոցիդ մեջ,**
**Կաթնաղբյուր ես եղել ինձ համար, մայրիկ.**

Տղան նվագում է, տղան երգում է... Իսկ չա րաբաստիկ հորթերը խրտնեցին:

Դե թող երգդ ու նվագդ, վազիր հաս հորթերին, թե չէ Մարտիրոս հորեղբորդ կի նը քեզ կծեծի ու սազդ քարին տալով ջարդուփշուր կանի: Սազը ձեռքին՝ փոքրիկ Ջիվանին վազում է տրտինգ տվող հորթերի ետևից, մտքում կրկնելով երգը...

Կարգախցի բանաստեղծ-աշուղ Սիային ընկատեց Ջիվանիկի բնատուր շնորհքը: Կանչեց իր մոտ և վերցրեց աշկերտ:

Երգեց աշկերտն, ու վարպետը հրճվանքով նկատեց, որ այս անգամ էլ իր ու իր աշակերտի վրա պիտի ճշտվի ժողովրդական այն դարձվածը, թե՝ «աշկերտը վարպետին կըգլխե»:

Ջավախքի երկարատև ու խստաշունչ ձըմեռներին Կարգախի ու հարևան գյուղերի գոմօդաներում իրենց խաղաշրջանն էին անցկացնում բանասացներն ու աշուղները:

Մրցույթներին մասնակցող Սիային իր հետ տանում էր աշկերտ Սերովբեին՝ Ջիվանուն:

Աշկերտը օրավուր աճում էր:

Մի անգամ էլ ահա դարձյալ աշուղների մրցույթ է: Հավաքվել են մի քանի աշուղներ, պատրաստ սպասում են: Մրցույթի կազմակերպողը ներս մտավ՝ ձեռքին կանացի գըլխաշորով կապոց: Կապոցը կախեց մրցատեղի առիքից ու դարձավ գուսաններին.

— Մրցանակը նրանն է, ով կգուշակի ու երգով կասի, թե ինչ է կապոցի մեջ:

Մրցույթն սկսված է: Աշուղները երգում են, բայց ոչ ոք չի կարողանում գուշակել, թե ինչ է գլխաշորի մեջ: Հերթն հասնում է ա-

շուղ Սիայուն: Նվագում է աշուղ Սիային: Նվագում է, բայց երգը չի սկսում, որովհետև չի կարողանում գուշակել կապոցի պարունակության ինչ լինելը:

Նվագում է աշուղ Սիային ու քիչ անց ամոթից շիկնած՝ լռում է:

Վարպետի լռությունից ցնցվում է աշկերտը ու, մոտենալով վարպետին, ցածրաձայն թախանձում.

— Վարպե՛տ, թող քո տեղը շարունակեմ:

Սիային հարցական ու աղերսագին հայացքով նայում է աշկերտին: Տարեց ու անուն հանած աշուղները հեգնանքով ու տագնապով են դիտում երկուսին:

Սիային նվագարանը տալիս է աշկերտին:

Նվագում է պատանին, նվագում է՝ աչքերը հրճվանքով լի...

Նվագում է. աշուղներն ու ամբոխը զարմանքով են նայում անծանոթ աշկերտին:

Նվագում է ու երգում: Երգի առաջին տողերը բանջարանոցի ու բանջարեղենների մասին է: Շփոթված աշուղները հարցական նըշան են դարձել, թե արդյոք ինչ է ասելու, ինչով է իր երգն ավարտելու հանելուկ մանուկը: Ջիվանիկը երգն ավարտում է.

**Քար չեմ թողնի դեմը վարպետիս խոփի,**
**Բացվիր կապոց, մեջդ լոբի է, լոբի...**

Մրցույթ վարողը ձեռքերը վեր է բարձրացնում ու ցած բերում առիքից կախված կապոցը: Բացում են կապոցն ու տեսնում՝ իրոք, մեջը լոբի է: Ժողովուրդը ծափահարում է: Աշուղները զարմանքով են նայում անհայտ մատղաշին: Իսկ աշուղ Սիային գրկել է աշկերտին, գլուխը սեղմել կրծքին ու արցունքոտ աչքերով ժպտում է:

Ցորեն բարձած սայլերը հասան Գյումրի:

Մինչ իր հորեղբայր Մարտիրոսը ընկերների հետ մտածում էր ցորենը վաճառելու մասին, կարգախցի երիտասարդը հարցնելով գտնում է Տալոյենց ղայֆախանան ու դռան մոտ կանգնած՝ լսում է աշուղների երգը: Ահը սրտում է. լսել էր գյումրեցիների թևավոր խոսքերը, գյումրեցի երեխայի հետ խոսել չի լինի, ուր մնաց թե անվանի աշուղների՝ խոսքի վարպետների հետ...

Բայց մեծ սերը հաղթեց վախին, ու կարգախցի պատանին՝ կանգնած դռան մոտ՝ լըսում է:

Ներսում տաքգլուխ մեկը տեսավ նրան, հասկացավ, որ գեղացի է, և ուզեց ծաղրել ու զվարճանալ.

— Ծո՛, դուն միս-արյունով մա՞րդ ես, թե՞ քարե արձան...

Պատասխանը չուշացավ.

— Մսե.եմ, լավ խաղ որ կլսեմ, քարե կըդառնամ, բայց որ սազը ձեռքս առնեմ, քեզի պես մսե մարդկանց քարե արձան կդարձնում...

— Իյա՜,— խոսքի տակը մնաց խոսք բացողն ու ետ դարձավ, գնաց նստեց աշուղների մոտ և այնտեղ կրկնեց անծանոթի ասածը: «Ուստաբաշին» աշխույժով կանչեց.

— Ջահե՛լ ջան, մեր քո՞վն արի...

Գյուղացի երիտասարդը մոտեցավ նըրանց:

— Նստի աշենք, վերցու՛ մե բաժակըմ խմի ու մե խաղըմ ըսա:

Բաժակ տվեցին, հետո սազ:

Նվագեց ու երգեց.

**Երբ որ լինի գարնանամուտ, նոր գարուն,**
**Կբազմանան վտակներդ, հայրենիք,**
**Ծայրեշար ցնծությամբ, երգով ու զվարթուն,**
**Ծարժվում են բանակներդ, հայրենիք:**

Իրոք որ, մարդիկ քար կտրած լսում են:

Հորեղբայրն էլ ընկերների հետ սրճարանի դռան մոտից ձայնում է.

— Սերոբե՜, արի՜, Սերոբե՜, էլ արի՜, երթանք տի...

Բայց Ջիվանիկը տրվել է երգին ու չի լսում:

Գյումրին Ջիվանուն աշուղ մկրտեց:

Ջամալին ու Ֆիզային, Ջահրին ու Պայծառեն... իրենց սազերը խոնարհությամբ մեկնեցին Ջիվանուն...

Բայց Ջիվանու նպատակը սազեր հավաքելը չէր, այլ ժողովրդի սերն ու ցավերը երգելը, խելք ու խորհուրդ տալը ժողովրդին, ապրելը ժողովրդի մեջ:

Աշուղի ճանապարհը Գյումրուց նրան տարավ Թիֆլիս...

Գնաց այնտեղ, որտեղ իրենից առաջ երգել էր Սայաթ-Նովան:

Այստեղ էլ լավ ընդունվեց:

Թիֆլիսը Ջիվանուն աշուղ կնքեց:

Բայց աշուղի համար մկրտվելուց ու կընքվելուց կարևորը սեփական երգի ակը գըտնելն ու հունը լայնացնելն է: Ու Ջիվանին ինքն իրեն անթև թռչնակ կոչելով, թևավոր թըռչունի պես թափառում է... Թափառում է, երգում ժողովրդի համար, թափառում է, ժողովրդից սովորում և ժողովրդին սովորեցնում:

— Եթե մեծ երգն ես ուզում,— եզրակացության է գալիս իմաստնացող աշուղը,— երգի ակը պետք է փնտրես քո իսկ հայրենիքում, հարազատ ժողովրդի մեջ, որովհետև երգի աղբյուրն էլ ժայռերի տակ, հողի վրա կարող է լինել միայն:



Ու թափառում է աշուղը: Թափառում է երգելով ու երգ որոնելով...

Մի օր էլ Գանձա գյուղում մոտենում է ձորի մեջ, Փարվանա գետի ափին, ժայռերի տակից հոսող աղբյուրին...

Հայ քնարերգության պատմության աստղապահերից մեկը:

Ջիվանին կանգնած է Գանձայում, աղբյուրի մոտ: Ծարավ է աշուղը: Աղբյուրի կողքին կանգնած է նաև մի աղջիկ ու... ծնվում է երգը.

**Պաղ աղբյուրի մոտը կանգնած մի աղջիկ,**
**Ձեռին ուներ թասը ջրով անուշիկ...**

## Վերջին անգամ Կարգախում

Կարգախցի տարեցներից ամեն մեկը շատ թե քիչ չափով Ջիվանու նմանությունը ունի: Իսկ այս տարեց մարդու՝ Համբարձում պապի ձայնը, կարծես Ջիվանու երգերը երգելու համար է միայն: Նա իր աչքով տեսել ու իր ականջով լսել էր Ջիվանուն:

— 1908 թվականի աշունն էր,— պատմում է Համբարձում պապը:— Լուր առանք, որ Ջիվանին Ախալքալաք է իջել ու գալիս է Կարգախ: Ժողովուրդը կալ ու կտի գործը թողած, մարգագետնում տեղ պատրաստեց Ջիվանու ելույթի համար: Կեսօրից ետ աշուղը գյուղ հասավ: Աղբյուրից ջուր խմեց, ողջագուրվեց ծանոթների հետ ու սազը ձեռքն առած՝ դիմեց գյուղացիներին.

— Աստված գիտե՝ քանի գյուղ ու քաղաք եմ անցել, երգել եմ շատ ու շատերի համար, այսօր ես ձեր ձեռքի տակ եմ, ասացե՛ք, ի՞նչ երգեմ, ինչքան ուզեք, այնքան կերգեմ:

Ժողովուրդն սկսեց պատվերներ տալ:

Ջիվանին երգեց, ու պատվերները շատացան:

Պատվերները շատացան, ու Ջիվանին երգեց:

Վերջում, երբ տարեցներն ու մերձավորները դիմեցին ժողովրդին համերգի ավարտման խոսքով, Ջիվանին ելավ ու մի երգ էլ ինքն իր պատվերով կատարեց.

**Հինգ տարի է, որ չեմ տեսել երեսդ,**
**Իմ եղել է հալս յաման, Արգյուրում,**
**Մի աշխարհըմ կարժե ամեն մի տեսդ,**
**Ընիմ մատաղ հող ու ջրին Արգյուրում:**

Գոքոր պապս նստում էր մեծ մարագի արևկող պատի տակ ու ցածրաձայն երգում.

**Գույներդ փոփոխված, դարձաք ցրտահար,**
**Աշնան վարդի նման ըսպիտակ մազեր...**

Խազո տատս էլ էր երգում.

**Ջիվան, բերանիցդ մարգարիտ թափվի,**
**Քեզի ատողներուն ավզա կթվա...**

Մեր գյուղացի ինքնուս աշուղ Վլոն էլ էր երգում.

**Վերքիս դեղ ու սպեղանի,**
**Ա՜խ, իմ Հայրենիքիս ջուրը...**

Հիմա Գոքոր պապս ու Խազո տատս չկան: Գյուղից հեռացել է նաև աշուղ Վլոն:

Հիմա ինչ-որ տրամադրությամբ երբ շուրթերիս խաղում են Ջիվանու տողերը, տեսնում եմ Գոքոր պապիս, Խազո տատիս ու աշուղ Վլոյի դեմքերը...

Երգի զորությունն... Մեռածներին հարություն տալու, հեռավորին ետ բերելու մոգական ուժ...

... Ջիվանին իր բնատուր հզոր տաղանդով շատ բանով առաջ անցավ իրենից առաջ եղած և իր ժամանակի աշուղներից, աշուղական արվեստի սահմանները մղելով առաջ, հասցնելով ժամանակի բանաստեղծության բարձրությանը: Դրանով իսկ հասնելով գաղափարական ու գեղարվեստական այն աստիճանին, որի վրա էին Ռափայել Պատկանյանը, Հովհաննես Հովհաննիսյանը և 19-րդ դարի երկրորդ կեսի մյուս նշանավոր բանաստեղծները: Ահա թե ինչու հայ պոեզիայի պատմությանը քաջատեղյակ Վալերի Բրյուսովը անուններով հարուստ հայ աշուղական արվեստի պատմության գագաթներն է համարում Սայաթ-Նովայի, Ղուկիանոս եոգիչ Կարնեցու և Ջիվանու ստեղծագործությունները:

## ՊԻՈՆԵՐ—ԴՊՐՈՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ԴՊՐՈՑԻ ԵՐԿՐՈՐԴ ԿՅԱՆՔԸ



Ժուռնալիստի տանը բացվել էր Երևանի գեղարվեստական դաստիարակության տան մասնաճյուղերի (դրանց թիվը մայրաքաղաքում քսանից ավելի է) սաների ցուցահանդեսը: Աննա Ղազարյանի աշխատանքները ուշադրության արժանացան: Պատվոգիր ստացավ նաև ընկերուհին՝ Արմինե Պետրոսյանը:



Դեկորատիվ-կիրառական արվեստի այս տեսակը Երևանի № 138 միջն. դպրոցի շատ աղջիկների է հրապուրել: Նրանք արդեն չորս տարի է, ինչ մասնակցում են իրենց իսկ դպրոցում գործող՝ 4-րդ մասնաճյուղի ասեղնագործական խմբակին:

Անահիտ Խաչատրյանը հոկվար է դպրոցում, սիրում է փոքրերի հետ աշխատել: Նրա սյուժետային-կոմպոզիցիոն նկարը նվիրված է հոկտեմբերիկական հինգ կանոններին: Անահիտն այն կրնվիրի իր փոքրիկ բարեկամներին:

Գործնական պարապմունքներին զուգընթաց խմբակավարը նաև տեսական զրույցներ է անցկացնում: Երեխաներն արդեն գիտեն Վան-Վասպուրականի, Շիրակ-Կարինի ասեղնագործության մասին: Դիտել են այդ վայրերի ասեղնագործության նմուշների նկարներ՝ թռչնազարդերով ու կենդանազարդերով կատարված:

Հարևան սենյակից գալիս է դաշնամուրի ձայնը, որ երբեմն-երբեմն ընդհատվում է, հետո նորից շարունակվում:

Այնտեղ էլ դաշնամուրի խմբակն է իր հերթական պարապմունքն անցկացնում:

Հիշյալ, ինչպես նաև կիթառի, պարի, լուսանկարչական խմբակներում ընդգրկված է 260 երեխա: Այս տարի է բացվել գեղանկարչական խմբակը:

Երբ ավարտվում են դասերը, դպրոցն իր երկրորդ կյանքով է ապրում: Մասնաճյուղի կաբինետները լի են արվեստասեր երեխաներով:

# ԳՏԱՆ ՊԱՏԱՀԱԲԱՐ

**— Սելջուկների մի խումբ 1337 թ. հարձակվում է Գնդեվանք գյուղի եկեղեցու վրա: Եկեղեցու գրիչը մորթվում է, մագաղաթյա անավարտ մատյանի թերթերը ներկվում են արյունով: Գնդեվանքցիները օգնություն են խնդրում Կեչուտ գյուղի բնակիչներից: Կեչուտցի զինվորների փոքրաթիվ խմբի ղեկավարն է դառնում Թամղութը ու գնում օգնելու գնդեվանքցիներին,— պատմում է Արեգնազ Զաքարյանը ու լսողներն ակամայից տեղափոխվում են պատմության գրքերն անցած ժամանակները:**

**Արեգնազը, ինչպես նաև Կեչուտի դպրոցի մյուս երեխաները, Թամղութի մասին իմացան մահարձաններից մեկի արձանագրությունից:**









Մահարձանը գտան շատ պատահաբար, Կեչուտի ջրամբարի կառուցման ժամանակ: Այն հետաքրքրեց շատերին, իսկ առավել ևս՝ դպրոցի պատմության ուսուցչուհի Վ.ալյա Բաբայանին: Ջրամբարը մեծացավ, և Կեչուտ գյուղը բարձրացավ վերև: Ժամանակի ընթացքում հին գյուղատեղում գտնվեցին նոր իրեր: Այդ ամենը երեխաները զգուշությամբ տեղափոխեցին դպրոց: Այդպես ծնվեց գավառագիտական թանգարանը, որը մինչև այսօր էլ հարստանում է: Թանգարանում կան խաչքարեր, պուլիկներ, կավե զանազան տեսակի ամաններ, երկանք, օրորոց, խնոցի, ինքնաեռ, դրամներ, երկրագործական տարբեր իրեր: Պիոներները այդ ամենը գրանցել են, կատարել հաշվառում, դասավորել ըստ դարաշրջանների:

Դպրոցի պատմության խմբակն իր պարապմունքները հաճախ թանգարանում է անցկացնում:

Իսկ թանգարանային նյութերը պատմելու շատ բան ունեն:

## ՎԵԴԻ ԱՎԱՆԻ ՊԻՈՆԵՐՏՈՒՆԸ

1984 թ. հունիսին Մոսկվայում տեղի ունեցած շրջանային և գյուղական պիոներտների համամիութենական հավաքին մասնակցեցին նաև Վեդու պիոներտան սաները, որոնց աշխատանքները արժանացան մեդալների և պատվոգրերի:

Գորգագործության խմբակ: Դազգահների առջև աշխատում են իրենց գործով կլանված դպրոցականները: Նրանց մատների տակ ծնվում են գեղեցիկ հայկական գորգեր՝ մեսրոպյան այբուբենով, Հայաստանի արևով ու ծաղիկներով: Այս փոքրիկ գորգագործուհիների աշխատանքները միայն հմուտ աչքի կտարբերի որակյալ վարպետի աշխատանքից:

Վեդու պիոներտանը անց է կացվում հետաքրքիր մի մրցույթ. մրցույթում հաղթողին՝ ում հաջողվում է հասնել առավել մեծ արդյունքների, շնորհվում է վարպետի կոչում:

— «Տեղական մաշտաբի» վարպետներ մենք շատ ունենք,— ասում է պիոներտան վարիչ Սիլվա Ավիկյանը,— նրանցից հատկապես ուզում եմ հիշատակել Արսենին ու Մաթևոսին: Ինչու՝ որովհետև նրանք համարվում էին «դժվար երեխաներ»: Արսենի մասին ասում էին, թե երկու րոպե տեղում չի կարող հանգիստ նստել: Բայց հիմա նա կարող է դազգահի առջև ժամերով նստել՝ կենտրոնացած ու լուռ, և ոչ ոք չի կարող նրան շեղել իր գործից: Իսկ Մաթևոսին պիոներտանն արդեն «շտապ օգնություն» են անվանում: Բոլորին օգնության է հասնում, ում ինչով կարողանում է: Ընդհանրապես, կարծում ենք, որ պիոներտան նպատակն է օգնել դպրոցին ու ծնողներին՝ երեխայի դաստիարակության գործում, բացահայտել երեխաների ընդունակություններն ու հետաքրքրությունները: Եթե երեխաները փողոցում աննպատակ թրև գալու փոխարեն գալիս են մեզ մոտ, ուրեմն իզուր չենք աշխատում:

Սիլվա Ավիկյանը չի թաքցնում իր հպարտությունը: Իրոք, նա հպարտանալու հիմքեր ունի. երեխաները սիրում են նրան, նրա առանձնասենյակը միշտ լիքն է երեխաներով, որ գալիս են իրենց հոգսերը, ուրախությունները կիսելու, նոր մտահղացման վերաբերյալ խորհրդակցելու: Վերջերս երեխաներին մտահոգում էր մի հարց. ինչպես դիմավորեն մոսկովյան 12-րդ փառատոնը: Այ, Լարիսան արդեն փառատոնի խորհրդանիշը գործում է գորգի վրա...

Պիոներտունն իր հոգսերն էլ ունի: Խըմբերի մի մասը թերի է կոմպլեկտավորված, և միշտ չէ, որ երեխաները հարմար հումք են ունենում իրենց աշխատանքի համար:

ՈՍԿԱՆ ՄԱՄԻԿՈՆՅԱՆ




Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵԶՕՂԼՅԱՆԻ

Ապրում էր այս աշխարհում մի հին. շատ հին ծովային,
Անդադրում մի մարդ էր. որ ուներ անթիվ հոգս ու գործ,
Մեկ այս գործին էր նետվում. մեկ՝ մյուսին. հաջորդին,
Ու՝ ոչ մեկը չավարտեց. թեև ուներ կյանքի փորձ:

Փոթորիկը մի անգամ անհայտ կղզի երբ նետեց՝
Չուներ գլխարկ ու կոշիկ. չուներ պիջակ ու շալվար,
Կարթ, որ գնար ձուկ որսար, զենք, որ իրեն պաշտպաներ,
Սերմ, որ ցաներ. մշակեր և օրվա հաց ունենար:

Նախ և առաջ, մտածեց, հարկավոր է ջուր գտնել,
Չկա՞ այստեղ մի աղբյուր. թեկուզ առվակ կամ ջրհոր,
Հարկավոր է նաև այծ՝ կողքիդ մի շունչ ունենաս,
Կամ թե վայրի ճուտիկներ՝ կընտելացներ օրեօր:

Չէ. մտածեց. սկզբից լավ է մի տուն կառուցել.
Վտանգներ կան չորս բոլոր՝ հուսալի բան է տունը,
Անձրևներ կլինեն կամ գազանը մոտ կգա՝
Դուռդ փակիր սողնակով ու դու մտիր հանգիստ քուն:

Չէ, փոշմանեց, սկզբում լավ է մի կարթ պատրաստել.
Մի քիչ փորը կշտանա՝ հետո մի բան ձեռնարկի,
Իսկ արևն էլ վերևից կուրացնում էր ու այրում,
Դժվար է կյանքը այստեղ՝ այն էլ առանց գլխարկի:

Նախ գլխարկը կհյուսի, ապա կարթը, չէ՛, չէ՛, նախ
Հարկավոր է ջուր գտնել (առվակ, ջրհոր կամ աղբյուր),
Շոգ է սաստիկ, այս շոգին մարդս ինչպե՞ս դիմանա,
Ծարավից հո կմեռնի. թե չգտնի մի պուտ ջուր...

Ու երբ անտառ մտավ նա, խորանում էր, և ահա
Առվակի ձայն. ինչ լավ է՜. բայց դե թախծեց նույն պահին,
Եվ արցունքոտ աչքերով, մտածեց, թե՝ այծ է պետք.
Առանց ընկեր թող անգամ չմնա քո թշնամին:

Բայց հենց տեսավ նա այծին իր մռութով բարետես,
Մտածեց՝ չէ, պետք է շուտ նավակ նստել. ետ գնալ,
Իսկ նախ նավա՞կը սարքի, չէ՛, առագաստը կարի,
Հազար գործ էլ տանն ունի՝ չի կարելի ուշանալ:

Ու հենց նստեց սկզբից, որ առագաստը կարի.
Թվաց հանկարծ թշվառին՝ բնիկներ են մոտենում.
Չէ՜, այս վայրում առանց տան. առանց ամուր դռների
Մարդ գուցե և հոշոտվի. թե ծածկ չունի. հաստատուն:

Հարկավոր է տունը, բայց նավակ էլ է հարկավոր,
Առագաստ է հարկավոր. և՛ այծ. և՛ կարթ. և՛ առվակ.
Այսպես նստել ավազին, մտածում էր նա մոլոր,
Շալվար է պետք. գլխարկ էլ՝ արևն այստեղ շատ է բարկ:

Բայց թե ինչից սկսեր՝ ո՞րն էր շտապն ամենա.
Տաք էր ավազն ու փափու՛կ, պառկեց, որ լավ մտածի,
Ինչպես վերջին մի անբան պառկել էր նա պարզապես,
Մինչև մի նավ մոտ եկավ ու վերցրեց անբանին:

Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ

ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# Բալենիները



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Տատիկին խնդրեցի, որ մի գործ ասի՝ անեմ: Սովորաբար նրան այդ դուր է գալիս: Բայց եթե զայրացած է լինում, ասածդ լուրջ չի ընդունում, կարծում է, թե շարունակում ես քո անկարգ կատակները:

Այս անգամ էլ, ահա, խեթ-խեթ նայեց ինձ ու դժգոհ վրա բերեց.

— Դա՛սդ սովորիր, դրանից էլ լավ գո՞րծ...

— Բալը չե՞նք քաղելու,— խեղճ-խեղճ հարցրի ես:

— Բա՛լը,— պատուհանից բալենիների կողմը նայեց,— թող մի գիշեր էլ կարմրի... Վաղը առավոտյան կքաղենք:

Մյուս օրը առավոտյան, արևի ճառագայթները հենց հասան աչքերիս, ես արթնացա և իսկույն հիշեցի, որ այսօր բալը քաղելու ենք: Մտածեցի իմաց տալ Գագիկին, որ նա էլ գա, միասին մեր բալը քաղենք: Բայց իմաց տալու կարիք չեղավ, Գագիկը եկել, թթենու ետևում կանգնած՝ սպասում էր ինձ:

— Ի՞նչ անենք,— ինձ տեսնելուն պես հարցրեց նա:

Եվ սպասում էր, որ ես ասեի՝ չգիտեմ, դու ասա: Դա նրան շատ էր ուրախացնում, և նա սկսում էր բաներ ասել, ու եսստիպված էի լինում նրան ենթարկվել: Հետո նա ինքն

իր մեջ փքվում էր, թե՝ տեսե՛ք ինչ խելոք ու ճախաձեռնող եմ:

Այս անգամ էլ իմ պատասխանին չսպասելով, մատը բարձրացրեց ու հեղինակավոր ասաց.

— Տես թե ի՛նչ եմ ասում:

— Ես ասեմ,— վրա բերեցի ես:

— Ո՛վ, դու՞, դու ի՞նչ կարող ես մտածել, որ իմ մտածածից լավը լինի:

— Լսի՛ր, հետո՛ ասա:

— Գիտեմ, գիտեմ... պիտի ասես՝ ջրանցք փախչենք, լողանանք...

— Չգտար:

— Եվ կամ առաջարկելու ես՝ ծառը բարձրանանք ու երգենք, ես մեր ծառի վրայից, դու էլ՝ ձեր:

— Չգտար:

— Բա ի՞նչ է ուզածդ... ամբողջ օրը հենց այնպես նստե՞նք...

— Հենց այնպես չնստենք... բարձրանանք ծառն ու քաղենք մեր բալը, տե՛ս, կարմրել է:

— Մեր բալն էլ է հասել,— ասաց նա:

— Տա՛տ,— ձայնեցի ես,— բալը ե՞րբ ենք քաղելու:

— Հիմա՛, հիմա՛,— պատասխանեց տատիկը,— քանի շոգը վրա չի տվել, առե՛ք դույլերը, գործի՛ անցեք:

— Լսեցի՞ր,— դարձա Գագիկին:

Ցանկապատի աջ ու ձախ կողմերում դեմ-դիմաց կանգնած էին երկու բալենի. մեկը՝ Գագիկենցն էր, մյուսը՝ մերը: Երկուսն էլ ասես կարմիր վզկապներ էին կապել: Բալերը շողշողում էին արևի տակ, իսկ տերևները կարծես զնգզնգում էին կանաչ, փայլփլուն զանգակների պես:

Տատիկը երկու դույլ ձեռքին դուրս եկավ խոհանոցից, կանգ առավ, հիացմունքով նայեց շողշողուն բալերին ու դույլերը մեզ մեկնելով, ասաց, որ պետք է զգուշորեն ծառը բարձրանանք ու այնպես քաղենք, որ բալը կորիզահան չլինի:

Մենք դույլերը ճյուղերից կախեցինք ու մտանք տերևների մեջ: Ոտքիս տակ բալ տրորվեց, կարմիր հյութը ծորաց կանաչ տերևի վրայով, ոտքս էլ ներկեց:

— Արյուն,— շշնջացի՝ ոտքս ցույց տալով Գագիկին:

Գագիկը ծիծաղեց. «Չե՛ս խաբի»:

— Զգու՛յշ եղեք՝ չընկնե՛ք, երեխե՛ք,— ասաց տատիկս:

Մի բալ համտես արեց ու ձայն տվեց Գագիկի տատիկին.

— Վարդանու՛շ, բալը հասել է, չե՛ս քաղում, իսկը ժամանակն է, այսօր էլ գիրք 'մի' կարդա...

— Քաղու՛մ եմ, քաղու՛մ,— գիրքը մի կողմ դրեց Գագիկի տատիկը,— էն ավարան ու՞ր կորավ...

— Այստե՛ղ եմ, այստե՛ղ,— կանչեց Գագիկը,— Սամսոնենց բալն ենք քաղում, հետո էլ մերը կքաղենք:

— Քի՛չ կարդա, ա՛յ Վարդանուշ, քի՛չ, մի քիչ էլ գո՛րծ արա,— տատիկն ինքը կարդալու սեր չուներ ու նրա կարծիքով մեծի համար գիրք կարդալը գործ չէր:

— Հիմա, հիմա, էջը նշան անեմ, կգամ,— պատասխանեց Գագիկի տատիկը:

Քիչ անց նա ցանկապատի մյուս կողմում էր: Դեմ-դիմաց կանգնած նա ու իմ տատիկը զրուցում էին: Իսկ մենք շարունակում էինք հատ-հատ քաղել կարմիր բալը, լցնել դույլերի մեջ:

— Զգու՛յշ քաղեք, չփչացնեք,— ժամանակ առ ժամանակ ձայնում էր իմ տատիկը:

— Զգու՛յշ քաղեք,— կրկնում էր Գագիկի տատիկը,— վայր չընկնե՛ք:

— Զգույշ ենք, զգույշ,— ծիծաղում ենք մենք:

— Տա՛տ, երկու բալենիների ճյուղերը խառնըվել են իրար, ինչպե՞ս ջոկենք,— ծառի վրայից ձայնեց Գագիկն իր տատիկին:

Մեր տատիկները միասին պատասխանեցին.

— Քաղե՛ք, երկուսն էլ քաղե՛ք, մուրաբան միասին ենք եփելու:

Մի քանի ժամում քաղեցինք ամբողջ բալը: Տատիկները երկու անգամ բալով լի դույլերը խոհանոց տարան: Իսկ մենք շարունակում էինք քաղել:

Ծանրաբեռնված ճյուղերը կամաց-կամաց թեթևացան, սկսեցին ուրախ տարուբերվել:

Տատիկս ձայնեց.

— Ճնճղուկների՛ համար էլ բալ թողեք, ծառի բերքից նրանք էլ բաժին ունեն:

— Նրանք ծառի համար ի՞նչ են արել, որ ծառի բերքից բաժին ունենան,— ասացի ես,— ո՛չ ջրել են, ո՛չ հողը փխրեցրել:

— Չգիտե՞ս, որ նրանք եթե չլինեն, բերքը որդերի բաժին կդառնա,— հիշեցրեց տատիկս:

— Չգիտե՛ք, որ ծտերը այգու սանիտարներն են,— հիշեցրեց Գագիկի տատիկը:

Ամոթ էր ինձ ու Գագիկի համար, որ մեր դասագրքերում գրվածը տատիկներն էին մեզ հիշեցնում:

Մենք իջանք ծառերից: Ճյուղերին մեր փոխարեն թառեցին ճնճղուկները, որոնք մնացած բերքի տերն էին:

**ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ**

# Հայրենիք

— Այս ի՞նչ արև իջավ սարին:
— Դա իմ անուշ եղբայրիկն է:
— Ի՞նչ կաքավիկ թռավ քարին:
— Դա կաքավ չէ, իմ քույրիկն է:
— Ի՞նչ մանուշակ թփից բուրեց:
— Մանուշակ չէ, իմ մայրիկն է:
— Այն ի՞նչ հովիկ ինձ համբուրեց:
— Դա հովիկ չէ, իմ հայրիկն է:

Ինձնից շատ եմ սիրում նրանց,
Ավելի, քան լույսը կյանքի,
Ես նրանց հետ հազարագանձ
Մասն եմ իմ մեծ Հայրենիքի:

# Ծաղիկ

Ի՞նչ է ասում մեղուն ծաղկին,
Որ նեկտար է տալիս մեղվին.
— Ինչքան նեկտար քեզնից տարա՝
Թող քեզ հազարն ավելանա:

— Ի՞նչ է ասում ծաղիկն ամպին,
Որ անձրև է տալիս ծաղկին.
— Ինչքան անձրև քեզնից տարա՝
Թող քեզ հազարն ավելանա:

— Ի՞նչ է ասում ամպը առվին,
Որ ջրիկ է տալիս ամպին.
— Ինչքան ջրիկ քեզնից առա՝
Թող քեզ հազարն ավելանա:

— Ի՞նչ է ասում առուն սարին,
Որ իր ձյունն է տալիս առվին.
— Ինչքան ձյուն, որ քեզնից առա՝
Թող քո լանջին ծաղիկ դառնա:

# Մեզ համար

Ծողաց կայծակը կրկին
Երկնքում ամպ ու խավար,
Ու ձնծաղիկը ձեռքին
Գարուն բերեց մեզ համար:

Արեգակը ծիծաղկոտ
Հովիտներով ծաղկավառ,
Մորու կարմիր թփերով
Ամառ բերեց մեզ համար:

Մի մեծ երամ ձգվեց վեր,
Ու մշուշը հողմավար
Կողովներով ծանրաբեռ
Աշուն բերեց մեզ համար:

Սար ու ձորին մեղմ նազով
Ջյունի փաթիլն իջավ վար,
Ու իր փափուկ երազով
Ձմեռ բերեց մեզ համար:

# Հարցում

— Երբ թոշնում են ծաղիկները,
Ու՞ր է գնում գույնը նրանց:
— Անցնում է մեր ալ այտերին:

— Երբ լռում են աղբյուրները,
Ու՞մ է մնում կարկաչն իրենց:
— Անցնում է մեր ծիծաղներին:

— Երբ չվում են թռչունները,
Ու՞մ է մնում դայլայլն իրենց:
— Մեր երգ ասող շրթունքներին:

Դրա համար մեր մեծ երկրի
Մանուկներս անուն-անուն՝
Ծաղիկներին, աղբյուրներին
Ու հավքերին ենք նմանվում:

# Թիթեռ

Ես թիթեռ եմ,
Ես թիթեռ եմ,
Երկնքի ու
Երկրի տերն եմ:
Ես թիթեռ եմ,
Ես թիթեռ եմ,
Նեկտարի ու
Ոսկու բեռ եմ:
Ես թիթեռ եմ,
Ես թիթեռ եմ,
Հազար սարի,
Հազար ծաղկի
Հազար բուրմունք
Ձեզ կբերեմ:
Սարում, ձորում
Ու դաշտում մեր,
Ասեք տեսնեմ,
Ո՞վ չի թիթեռ:

# Գարու խուրձը

Օրն էր մթնում, երբ պապը մեծ
Դաշտից գարու մի խուրձ բերեց:
Ոլը խնդաց,— ահա ինձ բախտ՝
Քնեմ փափուկ այս խրձի տակ:
Գառը ասաց,— իր տակ մտնեմ,
Ոլի կողքին մի տեղ գտնեմ:
Աքլորն եկավ հավերի հետ,
Ասաց,— կողքիս հանգիստ քնեք:
Ճնճղուկները գարին տեսան,
Ամբողջ խմբով վրա հասան:

Խուրձը քնեց խշխշալով,
Իրենք՝ խրձում՝ մշմշալով:

Առավոտյան, երբ արթնացան,
Աչք ածեցին բոլորն իրար,
Ամենքն իրենց տեղում էին,
Միայն... գարու խուրձը չկար:



ԼԱՐԻՍԱ ՄԱԼՈՒԵՎԱ

# Կյանքն ինձ համար

Կյանքը ինձ համար
Այս արշալույսն է,
Սերն է, արցունքն է
Կյանքը ինձ համար:

Կակաչների ալ
Թերթերն է վառվող,
Հովի համբույրն է՝
Մեղմիկ ու շոյող:

Մորս օրորն է,
Լուսնյակի շողն է,
Երգող արտույտն է
Կյանքը ինձ համար:

Խաղաղ ժպիտն է
Բարեկամ մարդկանց,
Հայրենի տունն է
Շեն ու սրտաբաց:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

ՄԵՐՈՒԺԱՆ ՎԱԼԱՆՑԱՆ



Ծառերից այն կողմ
ծառեր են կանգնած,
Լեռներից այն կողմ
լեռներ են էլի:
Եվ պահանջում են ծառ ու լեռները,

Եվ պահանջում է քաղաքը՝
թաղված լույսերի գրկում,
Եվ պահանջում է լիճը՝
պղտորված իր կոհակներով,
Եվ պահանջում են
հուշարձանները Անհայտ զինվորի

Ո՛չ՝ ավերումին,
ո՛չ՝ հրթիռներին աշխարհակործան...
Սպիների մեջ թաղված աշխարհը,
Իսկ Հիրոսիման ու Նագասակին՝
Դեռ բաց վերքերով,

**Եվ այս երկնքի լաջվարդը մաքուր՝**
**Աշխարհի բոլոր մանկանց շուրթերով**
**աղաղակում են,**
**Հրամայում են արդեն հուշ դարձած**
**Անհայտ զինվորի շուրթերով**
**ազդու.**

## Ոչ՝ պատերազմին...

Մեր բակում, ուղիղ տան դիմաց, մի բարակ ու երկար բարդի կար, որ միշտ քամուց օրորում էր գլուխը և խշշում: Այդ խշշոցը նման էր մեղմ երգի, որ ալիք առ ալիք իջնում էր ցած, խուժում տան բաց պատուհանից և պատերին քսվելով փշրվում:

Ծառը ձմռանը մերկանում էր, կուչ գալիս սառցե պատյանի մեջ, իսկ գարնանը նորից կանաչ զգեստ էր հագնում: Ամռանը հաճելի էր նրա շվաքում նստելը...

Մորս ասելով՝ ծառը տնկել էր հայրս՝ ռազմաճակատ մեկնելուց մի երկու տարի առաջ: Հենց դա էր պատճառը, որ այն մոտ ու հարազատ էր դարձել իմ սրտին: Ամեն անգամ դպրոցից տուն վերադառնալով՝ մոտենում էի, երեսս հպում նրա ողորկ բնին և այդպես առնում հորս կարոտը... Երբեմն էլ չէի կարողանում զսպել լացս: Մայրս, որ պակաս չէր այրվում-խորովվում հորս համար, միշտ սիրտ էր տալիս ինձ.

— Համբերի՛ր, որդի՛ս, կվերջանա անիծյալ պատերազմը, հայրդ տուն կգա:

Իրար ետևից անցնում էին օրերը, ամիսներն ու տարիները, իսկ հայրս չկար ու չկար: Մեր միակ ուրախությունը նրա նամակներն էին, բայց հետո դրանք էլ կտրվեցին...

Մի օր էլ գլխացավից տառապող մայրս դեղորայքի տուփը ձեռքին՝ պատրաստվում էր դեղահաբ ընդունել, երբ հանկարծ բարդու կատարին մի թռչուն երևաց: Կաչաղակ էր՝ լայն թևերով, կլորավուն պոչով և կարճ կտուցով: Նա հայացքն ուղղեց մեր տան կողմը և մի քանի անգամ կղկղաց:

Հարցրի մորս.

— Ի՞նչ է ասում, հասկանու՞մ ես:

Մայրս սիրում էր կատակել

ԳԵՎՈՐԳ ՀԱՅՐՅԱՆ

# Կաչաղակը

Նկ. ԲԱԳՐԱՏ ԱՐԱՋՅԱՆԻ



նույնիսկ տխրության պահերին.

— Ո՞նց հասկանամ, ա՜յ որդի, գրաբար է խոսում,— ապա ավելացրեց:— Ինձ թվում է, որ հորիցդ բարի լուր ենք ստանալու:— Ասաց և ափսեի մեջ մի բուռ ցորենի հատիկ լցնելով՝ դրեց պատուհանի գոգին: Ու երբ ետ քաշվեց, նկատեց, որ ափսեի կողքին թողել է նաև դեղորայքի փոքրիկ տուփը:

Մենք թաքստոցից հետևում էինք, թե ինչ է անելու կաչաղակը:

Շատ չանցած նա վիզը երկարեց և համոզվելով, որ ոչ ոք չկա, իջավ ցած, սկսեց ախորժակով կտցել ցորենի հատիկները: Երբ վերջացրեց, կտուցը մտցրեց դեղորայքի տուփի մեջ: Մայրս այդ տեսնելով, բարձր ասաց.

— Վա՜յ, քոռանա՜մ ես, խեղճին մի բան չպատահի՞:

Մորս ձայնից ահաբեկված կաչաղակը թևին տալով հեռացավ: Տուփի մեջ երկու-երեք գլխացավի հաբեր կային, պարզվեց, որ թռչունը կերել է:

— Երևի նա էլ գլխացավ ունի,— ասաց մայրս:

Անցավ որոշ ժամանակ և, ով ուրախություն, հորիցս նամակ ստացվեց: Նա վերջին մարտերից մեկում ծանր վիրավորվել էր և հնարավորություն չէր ունեցել գրելու: Ապաքինվելուց հետո զորացրվել էր:

— Տեսա՞ր, որ չսխալվեցի, երանի թռչունը նորից երևար, ավելի լավ բաներով կհյուրասիրեի ու նրա լավության տակից դուրս կգայի:

— Ճանապարհը ծանոթ է, կգա,— վստահ ասացի ես:— Որ գա, ինչո՞վ ես հյուրասիրելու:

— Բլիթներ եմ թխել, ասում են կաչաղակը քաղցր շատ է սիրում:

Մորս ասածը նորություն էր ինձ համար: Բնագիտության դասատուն մեզ սովորեցնում էր, որ կաչաղակը ագռավների ընտանիքի թռչուն է և սնվում է միջատներով, մանր ողնաշարավորներով ու սերմերով: Չցանկացա առարկել մորս, թող անի իր ուզածը: Եվ ահա մի կարճ ժամանակ անց կաչաղակը նորից թառեց բարդու գլխին: Մայրս բլիթները դրեց նրան ծանոթ տեղը: Կաչաղակը կղկղաց և ցած իջավ, բայց նույնիսկ չնայեց բլիթների կողմը: Մի կարճ պահ կանգնեց պատուհանի գոգին, ապա նորից թռավ գնաց:

Մոտեցանք պատուհանին և տեսանք բլիթների կողքին ընկած երկու ճերմակ փետուր:

Մայրս վերցրեց փետուրները և ասաց.

— Ցորենի հատիկների ու հաբերի փոխարեն է բերել, ուրեմն կաչաղակն էլ զուրկ չէ երախտագիտության զգացումից...




ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# ՆԵՐՍԵՍ ՇՆՈՐՀԱԼԻ

## Եդեսիայի ողբը

**Որպես տիկին յուշիկ գնայ,**
**Պարանն յետնեն ի քարշ կուգայ,**
**Բազմի յոսկի բարձի վերայ,**
**Որսիկ առնէ քանց ըզբազայ:**

(Տիկնոջ պես հուշիկ է քայլում, ետևից պարանն է քարշ գալիս, բազմում է ոսկեհուռ բարձի վրա, որս է անում ինչպես բազեն): Սա հանելուկ է: Դժվար չէ հասկանալ, որ խոսքը կատվի մասին է, այնքան կենդանի ու դիպուկ են նշված նրա քայլվածքը, արտաքինը, սովորությունները: Այստեղ բոլորովին նոր հայացք կա աշխարհի նկատմամբ: Հեղինակը սրտագին ուշադրությամբ դիտում է կյանքը, այնքան գույն ու զգացմունք շռայլում փոքրիկ, առօրեական կենդանուն պատկերելու համար:

Այս հանելուկը մեզանից ութ հարյուր տարի առաջ գրել է միջնադարի մեկ այլ մեծ բանաստեղծը՝ Ներսես Շնորհալին:

Նարեկացուց հետո անցել էր ոչ ավելի, քան երկու դար: Բայց արդեն կրոնական գործիչ, կաթողիկոս Ներսեսը հանելուկներ է գրում մանուկների համար, որոնց մեջ կրոնական այլևս ոչինչ չկա, որոնց առարկան մեզ շրջապատող աշխարհի բազմազան երևույթներն են: Եվ ոչ միայն հանելուկներ: Շարունակելով հոգևոր բանաստեղծության ավանդները, Շնորհալին միաժամանակ դառնում է մեր առաջին աշխարհիկ մեծ բանաստեղծը:

Նրա կյանքն անցել է Կիլիկիայում, կիլիկյան նորակազմ հայկական պետության մեջ: Նարեկացու պես վաղ հասակից մտել է վանք, դարձել հոգևորական: Բայց նրա հայացքը աշխարհին էր ուղղված: Նա միաժամանակ պետական գործիչ էր ու երաժիշտ: Շատ հոգևոր երգեր է գրել, շատ է մտածել մարդու մեղքերի մասին և աղոթել դրանց թողության համար, բայց նրա հոգևոր երգերն էլ այլ են՝ մեղմ, լուսավոր, դրանք ոչ թե փոթորկում են մարդու հոգին, այլ հանգստացնում: Դրանց մեջ մի նոր, զարմանալի քնարականություն կա: Շնորհալին հմտությամբ օգտագործում է չափն ու հանգը, ջանում հաճելի անել դրանք մարդու ականջին ու սրտին:

Եթե Նարեկացին իր հանճարեղ պոեմում ողբում է մարդու անկատարությունը, ապա Շնորհալին ողբում է արևելյան մեծ քաղաքի՝ Եդեսիայի կործանումը արաբական ասպատակություններից: Նրա «Ողբ Եդեսիոյ» պոեմը շատ մեծ նորություն էր հայ բանաստեղծության մեջ: Այստեղ էլ բազմաթիվ են հոգևոր հատվածները. բնական է, հեղինակը հայոց կաթողիկոսն էր: Բայց այս մեծ պոեմի բովանդակությունը առավելապես աշխարհիկ է, քաղաքական, հայրենասիրական: Եդեսիա քաղաքը, իբրև սգավոր մայր, ողբում է իր դժբախտ ճակատագիրը, հպարտությամբ պատմում իր զավակների խիզախության ու անձ-

նուրացության մասին, հավատում, որ զավթիչները պատժվելու են, իսկ ինքը վերագտնելու է իր երբեմնի վայելչագեղ տեսքը:

Եղեսիան դիմում է Հայաստանին՝ իբրև իր վշտակցի, և հարցնում է. «Ու՞ր են գահույք թագավորի Վաղարշապատ քո քաղաքի»: Հայոց ոչ վաղ անցյալի մայրաքաղաք Անին է դիմում վշտակցելու: Չէ՞ որ Անին էլ նման է եղել ծաղկած այգու.

**Ցորում էիր ժամանակի բերկրեալ ուրախ և ցնծալի,**
**Որպես այգի ողկուզալի կամ ձիթենի պտղով ի լի:**

(Դու ժամանակին բերկրանքի մեջ էիր և ցնծությամբ լի, որպես ողկուզաշատ այգի կամ պտղավետ ձիթենի):

Այսպես գունագեղ համեմատություններով ողբացող Եղեսիան ներկայացնում է իր կյանքի ուրախ և տխուր պահերը, նկարագրում Հայաստանի և Անիի փառքի ժամանակները, դրանով իսկ ավելի ազդու դարձնում նրանց ներկա ողբերգական վիճակը: Ու որպեսզի ընդգծի անցյալի անդառնալիությունը, դիմում է ժողովրդական հրաշալի համեմատության.

**Քանզի անցին (լավ օրերը) ըստ երազի, որպես ծաղիկ ամարայնի,**
**զհզորութիւն հորդ վտակի գարնանաբեր հեղեղատի...**

(Որովհետև անցան լավ օրերը երազի նման, ինչպես ամառվա ծաղիկները, գարնանաբեր հեղեղատի հորդ վտակի հորդությունը):

Շնորհալուց ութ հարյուր տարի հետո Հովհաննես Թումանյանը նույն համեմատությամբ էր պատկերում իր սիրելիների անդարձ կորուստը «Անուշ» պոեմում.

**Անցել են ունց որ ծաղկունքը պես-պես,**
**Որ անցած գարնան կային ձեր լանջում...**

Շնորհալին իրական գույներով նկարագրում է ասպատակողների բարբարոսությունները.

**Առ հասարակ կոտորէին, արեան վտակք հոսէին,**
**զՆրիտասարդս և զմանկտիս անխնայապէս խողխողէին,**
**յԱլիս ծերոց ոչ խնայէին, ոչ ի հասակն տղային:**

(Կոտորում էին բոլորին, արյան գետակներ էին հոսում, երեխաներին և մանուկներին անխնա կոտորում էին, ո՛չ ծերերի ալիքներն էին խնայում, ո՛չ երեխաների հասակը): Այսպիսի պատկերները մեր միջնադարյան գրականության մեջ նորություն չէին: Առավել ուշագրավ է Եղեսիայի պաշտպանների խրոխտ ձայնը, որ հնչում է պոեմում:

**Մի՛ երկիցուք զանգիտելով, եղբարք, ի սրոյն մահկանացուին,**
**Եվ ընդ քաջաց արիութեան մի՛ խառնեսցուք զերկյուղ վատին**
**Անուն բարի ժառանգեսցուք, որ ընթանայ յազգ երկրածին:**

(Մի՛ վախենաք կասկածելով, եղբայրներ, մահկանացուի սրից, և քաջերի արիությանը մի՛ խառնեք վախկոտի երկյուղը, բարի անուն թողեք իբրև ժառանգություն, որ այն ապրի երկրածին ազգի հետ): Բանաստեղծն հոգով այս հերոսների հետ է: Պատահական չէ, որ նրա հոգևոր տաղերի թվում է Վարդանի և նրա զինակիցների խիզախությունը փառաբանող երգը:

**Արդ նոքա զայս և զայսպիսիս միշտ առ միմեանըս գոչէին.**
**Իբր ատամունքն վարազին բանիւ զիրեարս սրէին:**
**Քաջալերէր հայրն զորդին, որդիքն ի մարտ պատրաստէին:**
**Անդ ոչ իշխան էր պատուական և ոչ կրտսեր՝ ի տեղ վերջին...**

(Այսպես նրանք միշտ նման խոսքեր էին միմյանց գոչում, վարազի ժանիքների պես խոսքով միմյանց սրում էին, քաջալերում էր հայրը որդուն, որդիները մարտի էին պատրաստվում, այնտեղ ոչ իշխանն էր պատվով բարձր, ոչ էլ կրտսերն էր վերջին տեղում): Այնքանից հետո էլ դեռ Եղեսիան հավատով ու վստահությամբ, ժողովրդական հումորի շեշտերով գոչում է թշնամու հասցեին.

**Ու մի՛ կարծեր, ամբարտաւա՛ն, զքեզ հսկայ և հաղթանդամ,**
**Քանզի նման ես դու մկան, որ սատակմամբ պղծէ զթան...**

(Եվ քեզ, ամբարտավա՛ն, հսկա և հաղթանդամ մի՛ կարծիր, որովհետև դու նման ես մկան, որ սատկելով պղծում է թանը): Պոեմը, ակնհայտորեն, ուներ ընթերցողների մեջ արիություն և օտար լծի նկատմամբ անհանդուրժող ոգի դաստիարակելու նպատակ:

Շատ հետաքրքրական է, որ վերջում բանաստեղծը հարկ է համարում ավելացնել՝ «Քանզի բանիւ զիրս եղելոց, մեր ժամանակս դիպելոց, Որով տուաք ոչ թե գիտնոց, այլ անմարաց և տղայոց»: (Մեր ժամանակներում տեղի ունեցած բաների մասին պատմեցինք ոչ թե իմացողների, այլ չիմացողների և երիտասարդների համար), այսինքն պոեմը գրված է հասարակ մարդկանց համար:

Հոգևոր երգեր և հանելուկներ, հոգևոր պոեմ և «Եղեսիայի ողբը» ու էլի ուրիշ բազմազան ու բազմաբնույթ գործեր՝ արևով ու լույսով համակված, այսպիսի ժառանգություն է թողել միջնադարի բանաստեղծ Ներսեսը, որին իրավամբ կնքել են Շնորհալի:

ՅՈՒՐԻ ԿԱԶԱԵՎ

# Գարնանային հոգսեր

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Իգնատ պապը իր Միշկա թոռան հետ պատրաստվում էր խոտ բերելու գնալ։ Մայիսի սկիզբն էր, սարալանջերը տեղ-տեղ կանաչին էին տալիս, բայց գետի վրա սառույցը դեռ ամուր էր թվում։ Գետի մեջտեղում անանուն մի կղզյակ կար. անցյալ ամառ պապ և թոռ այստեղ երկու դեզ խոտ էին հնձել։ Անհրա-



ժեշտ էր այդ դեզերը տուն բերել, թե չէ գարնանային վարարումը կքշեր-կտաներ դրանք: Պապը մարտ ամսվանից պառկած էր հիվանդանոցում, Միշկայի ծնողները հյուսիս էին գնացել և գործը ժամանակին կատարելու հնար չէր եղել:

Կախշուրթ պառավ ձին, երբ նրան լծում էին սահնակին, աչքերը զարմացած շլում էր: «Այ թե բան են մտածել, մերկ հողի վրա, այն էլ՝ սահնակով»,— կարծես ուզում էր ասել նա:

Սառույցը գետի վրա արդեն բարձրացել էր ու կապտել: Ափերին արդեն ջուր էր երևում:

— Տե՛ս, Իգնա՛տ,— ծերունին զգուշացրեց հարևանը,— աստված չանի՝ գետը գժվի: Մեկ էլ տեսար՝ շարժվեց: Նրա բնավորությանը ծանոթ ես:

— Կհասցնենք,— ձեռքը թափ տվեց Իգնատը: Իհարկե նա գիտեր լեռնային գետի կատաղի և փոփոխական բարքը. ոչ միայն գարնանը, այլև ամառ ժամանակ, տեղատարափ անձրևներից հետո գետը մեկ ժամվա մեջ դուրս էր հորդում ափերից:

Կղզի հասան հաջող: Փայտե եղաններով պապ ու թոռ սկսեցին խոտը բարձել: Ձմեռվա ընթացքում խոտը պնդացել էր և ծանր շերտերով էր պոկվում-հանվում: Պապը հիվանդությունից հետո թուլացել էր, այնպես որ ամբողջ գործը թոռան ուսերին մնաց: Դրա համար էլ գործը երկարեց:

Սավելը համբերությամբ մի ոտքից մյուսն էր ընկնում քաշանների մեջ. նա մրսում էր: Հանկարծ ձին ականջները ցցեց, տագնապով խրխնջաց. երևի վատ բան զգաց: Իսկապես, գետի վերին մասում կարծես թնդանոթ արձակեցին: Հետո կրակոցները մոտեցան: Ուղղակի անցման մոտ օձագալար կայծակը սառույցը ճեղքեց, և ջուրը դուրս հորդեց: Րոպե առ րոպե ճեղքը լայնանում էր, ճյուղավորվելով գետի մի եզերքից մյուսը: Սառույցը կոտրատվում էր, բեկորները բարձրանում, բլուր էին կազմում: Գարնանային կատաղի ջրերի ալիքը վրա տվեց, սպառնալով իր ճանապարհին ամեն ինչ քշել-տանել:

Գյուղի ժողովուրդը հավաքվել էր գետի մյուս ափին: Մարդիկ ինչ-որ բան էին գոռում, բայց սառցահոսքի որոտը ձայները խլացնում էր: Իգնատը բռնեց ձիու սանձից և քարշ տվեց կղզու խորքը՝ բլրակի վրա:

— Հը՞, պա՛պ, ճի՞շտ էր հարևանը,— գոռաց Միշկան:— Տեսնու՞մ ես ոնց է վրա տալիս: Ծուռով լողալ կսկսենք:

Վարարած ջուրը քայլ առ քայլ գետափ էր բարձրանում: Սավելը խոխոացնում էր և դեսուդեն էր նետվում քաշանների մեջ: Աչքերը վայրի կրակով էին այրվում:

— Վախենու՞մ ես, սիրելի՛ս,— կարծես ինքնիրեն խոսեց Իգնատը, արձակելով ձին:

Գետի այն ափին ամբոխը շատանում էր, և մարդիկ ձեռքերով վերև էին ցույց տալիս:

— Ինչու՞ են մատները տնկել երկինք,— գոռաց Իգնատը:

Միշկան կռացավ պապի հե՛նց ականջին.

— Գուցե ուղղաթի՞ռ են ուզում ուղարկել:

Այդ րոպեին միայն Իգնատը հիշեց ուղղաթիռային բազայի մասին, որը գարնանից մինչև աշուն երկրաբաններին էր սպասարկում:

Մինչ այդ ջուրը սպառնալի բարձրանում էր դեպի բլրակը: Հենց այդ րոպեին լսվեց ուղղաթիռի հռնդյունը, որը կտրեց-անցավ գետը և վայրէջք կատարեց կղզու վրա: Մեքենայից դուրս թռավ երիտասարդ օդաչուն և՝

— Նե՞րս մտեք,— գոռաց: Միշկան բացասաբար շարժեց գլուխը և Սավելին ցույց տվեց: Պապը հասցրեց թոռան վզակոթին, բայց դա չօգնեց: Տղան նույնիսկ տեղից չշարժվեց: Օդաչուն ամեն ինչ հասկացավ, վազեց Սավելի մոտ և սկսեց նրան կապկպել սանձերով ու պարաններով՝ սկզբում կրծքի, ապա՝ փորի տակ: Ձին դողում էր, բայց հանգիստ կանգնած էր: Կապկպված՝ նրան մոտեցրին մեքենային: Միշկան նկատեց, որ Սավելը աչքերը փակ էր գնում:

Ձեռակերտ լծասարքի ծայրերը օդաչուն ամրացրեց ուղղաթիռի կորպուսի վրա գտնվող՝ զանազան ծանր բեռներ տեղափոխելու նպատակով սարքված հատուկ կեռերին: Մի րոպե անց մարդիկ արդեն մեքենայի ներսում էին: Շարժիչը հռնդաց, և մեքենան սահուն կերպով կտրվեց կղզյակից: Թե ինչ սարսափ ապրեց Սավելը, միայն ինքը գիտեր, համենայն դեպս, հողին իջնելուց հետո նա երկար ժամանակ դեսուդեն էր ընկնում:

Իսկ ջուրն անընդհատ բարձրանում էր: Այնտեղ, ուր կղզյակն էր, հիմա արդեն համատարած սառցափշուր էր:

Իգնատը ուրախությունից փաթաթվել էր օդաչուին և խնդրում էր հյուր գնալ իրենց տուն:

— Իսկ քո ականջները տանը կպոկեմ,— սպառնաց նա թոռանը,— ինչքան հոգս պատճառեցիր մարդուն պառավ կենդանու պատճառով:

— Դու էլ երիտասարդ չես, բայց ապրել ուզում ես,— հանդուգն առարկեց Միշկան:

Օդաչուն ծիծաղեց և ասաց.

— Ճիշտ է, տղա՛ս: Իսկ հոգսերը մեր աշխատանքում նորություն չեն: Մեզ հետ, պատահել է, կով էլ է թռել:

Թարգմ. ԱՂԱՎՆԻ ՄԱՆԱՍՅԱՆԻ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# Չորրորդցիների կախարդական փայտիկը

Դպրոցում հայտարարված ցուցահանդես-մրցույթին նախապատրաստվելու համար 6-րդ «գ» դասարանը հավաքվեց ժողովի:

— Եկեք միացյալ ուժերով մի տիեզերանավ պատրաստենք,— առաջարկեց Արամը:

— Կարող ես՝ ինքդ պատրաստիր: Ես ուզում եմ կավից քանդակներ անել,— ընդդիմացավ Կարենը:

— Կավ որտեղի՞ց պիտի ճարեք: Առաջարկում եմ փայտի վրա փորագրություններ անել,— ձայնեց Վարդանը:

Կարինեն իր խոսք-նետը ուղղեց դեպի Վարդանն ու Կարենը.

— Դրա համար նախ շնորհք է պետք, իսկ դուք, եթե հիշողությունս ինձ չի դավաճանում, աշխատանքի ուսուցումից «երեքներ» եք ստանում:

Կարինեի անունը զուր չէին «Սնայպեր» կնքել: Նետը նպատակակետին դիպավ, բարոյական լուրջ վնասներ հասցրեց: Ջոկատն իսկույն երկու մասի բաժանվեց՝ կարենականների ու կարինեականների: Խոսք-նետերի շաչյունով լցվեց դասասենյակը: Կողմերն իրար չէին զիջում: Պայքարը գնալով թեժանում էր: Ընտրում էին հակառակ կողմի ամենախոցելի տեղերը և ճշգրիտ հարված ուղղում:

— Դու գոնե ձայնդ կտրիր, Արմինե, ա՛յ փնթի, գոգնոցիդ այսօր էլ էիր ճաշ թափել:

— Սրան տես, ամբողջ օրը քրոջ հետ կըռվում է, նույնիսկ բակից է ձայները լսվում, քրոջդ գլխին մազ մնացե՞լ է:

Դժվար է ասել, ինչով կավարտվեր ներջոկատային պատերազմը, եթե ջոկատավար Մարինեն չզգար տուրուդմփոցի վտանգը և չսթափեցներ գզգզված մազերով կարինեականներին: Մի կերպ խաղաղվեցին: Գնացին տուն: Բայց դեռ երկար ժամանակ շարունակվում էր սառը պատերազմը, նույնիսկ իրար չէին հուշում, տետրեր չէին փոխանակում՝ արտագրելու համար:

Իսկ ցուցահանդեսից մի քանի օր առաջ Մարինեին հաջողվեց կողմերին հաշտեցնել: Նորից ժողով հրավիրվեց: Առաջարկությունները գրի առավ, այնքան շատ էին, որ հաշիվը կորցրեց: Հպարտ-հպարտ, հանգստացած գնացին տուն: Իսկ մրցույթի օրը ներկայացրեցին առաջարկությունների մի հաստ տետրը և... երկու ցուցանմուշ:

Հետո՞: Ավելացնելու առանձնապես բան չկա: Պարզապես... Կար-չկար... Ոչ, անպայման կար մի 4-րդ «բ» դասարան, որ կից էր 6-րդ «գ»-ին: 4-րդցիները նույնպես պատրաստվում էին ցուցահանդեսին: Միայն թե՝ ժողովներ ու ճառեր առանձնապես չեղան: Որոշեցին, պայմանավորվեցին— այդքանը: Իսկ ցուցահանդեսի բացմանը ներկայացրել էին և՛ տիեզերանավ, և՛ փոքրիկ արձանիկներ, և՛ ասեղնագործ աշխատանքներ, և՛ թղթե աղավնիներ և՛ ուրիշ շատ բաներ: Տեսնես ի՞նչ գաղտնիք ունեն այդ չորրորդցիները: Հաստատ՝ կախարդական փայտիկ ունեն կամ նման մի բան: Ինչպե՞ս անենք, որ վեցերորդցիներն էլ տեր դառնան գաղտնիքին: Գուցե դու՞ք, սիրելի ընթերցողներ, օգնեք նրանց:

Իսկ մեր կողմից այսքանը. հայերենում կան սքանչելի բառեր և դարձվածքներ, որ վատ չէր լինի հիշելը. կազմակերպվածություն, փոխօգնություն, ավելի շատ գործ, քան խոսք և այլն: Շարքը դուք ինքներդ կարող եք հեշտությամբ շարունակել:

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

Այսօր ոչ մեկին չի զարմացնում այն, որ դպրոցում օգտագործում են ձայնագրիչներ, հեռուստացույցներ, դիապրոյեկտորներ և ժամանակակից տեխնիկայի այլ միջոցներ։ Մասնագետների կարծիքով, դպրոցում տեխնիկայի ներդրման հաջորդ էտապը պետք է լինի էլեկտրոնային հաշվիչ մեքենաների կիրառումը։ Հունգարիայի Ժողովրդական Հանրապետության դպրոցներում արդեն այդպիսի մեքենաներ օգտագործվում են։ Հունգարիայի մասնագետները ստեղծել են էլեկտրոնային «օգնական», որը կիրառելի է բոլոր առարկաների դասավանդման ժամանակ։ Սարքի հնարավորությունները չեն սահմանափակվում կոնտրոլտացիաներով և հանձնարարված առաջադրանքի կատարման ճշտությունը ստուգելով։ Մեքենան դպրոցականներին կարող է օգնել նաև նրանց ազատ ժամերին։ Ո՞ւմ հայտնի չեն ուսուցողական բազմաթիվ խաղերը, իսկ խաղալ էլեկտրոնային հաշվիչ մեքենայով ավելի հետաքրքիր է և գրավիչ։ Եկող տարի Հունգարիայի Ժողովրդական Հանրապետության դպրոցներում նախատեսվում է տեղադրել երեքից վեց ԷՀՄ, իսկ այն դըպրոցներում, որտեղ էլեկտրոնային մեքենայի օգտագործումը կապված է լինելու աշակերտների ապագա մասնագիտությունների հետ, կտեղադրվեն տասից ավելի էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ։

Ձեզանից շատերը հաճախ տեսած կլինեն, թե ինչպես խոհանոցներում աննպատակ վառվում են գազօջախները, իսկ մտածե՞լ եք, թե որքան բարիք է փչանում ձեր աչքի առաջ։ Բերենք մի քանի օրինակներ։

100 մ³ գազը կարող է փոխարինել 12 տ ածուխի, 800 կգ նավթի կամ 750 կգ բենզինի։

1 մ³ գազ այրվելիս առաջանում է 8600 կկալ ջերմություն, որը բավական է 70 լ ջուր տաքացնելու համար։

Երեք տոննա բնական գազից կարելի է ստանալ մեկ տոննա գինու սպիրտ։ Այդ քանակությամբ սպիրտ կարելի է ստանալ նաև գազի մեջ պարունակվող էթիլենի յուրաքանչյուր 500 կիլոգրամից, իսկ 1 տ գազից կարելի է ստանալ 180—150 կգ էթիլեն։

Գազից ստացվող ացետիլենի հիման վրա մեր հանրապետությունում ստեղծված է ացետատային մանրաթելի արտադրություն։ 140 կգ ացետիլենից ստացվում է 1,500 մետր մետաքսի գործվածք, այսինքն այնքան, որքան կարող է արտադրվել կես հեկտարի վրա աճեցրած բամբակից կամ 820 հազար շերամի բոժոժից։

Սինթետիկ թելերից բացի, գազից ստացվող խեժերը լայնորեն օգտագործվում են արհեստական կաշի, ամանեղեն, պլաստմասսա, լուսանկարչական ժապավեն և շատ ու շատ այլ առարկաներ պատրաստելու համար։

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...



Հույն ճարտարապետ Կոլլանիկոսը զբաղվում էր նաև ալքիմիայով։ Փորձերից մեկի ժամանակ նա պատահականորեն ստացավ պայթուցիկ մի խառնուրդ, որը մինչ այդ դեռ ոչ մեկին հայտնի չէր։ Եվ երբ 678 թվականին արաբները հարձակվեցին Կոստանդնուպոլսի վրա, Կոլլանիկոսը առաջարկեց օգտագործել իր ստացած պայթուցիկ խառնուրդը։ Արաբները Դարդանելի նեղուցում անասելի պարտություն կրեցին, քանի որ պայթուցիկ խառնուրդը այրում էր նույնիսկ ջուրը և ոչնչացնում նավերը։ Արաբները այդ բոլորը վերագրեցին հրաշքի։ Նրանք գտնում էին, որ հույները նվաճել են կայծակը և ստեղծել «սատանայի կրակ»։

«Հունական կրակի» գաղտնիքը երկար ժամանակ մնում էր անհայտ և կրում էր խորհրդավոր բնույթ։ Հետագայում միայն պարզվեց, որ Կոլլանիկոսի ստացած խառնուրդը բաղկացած էր գլխավորապես այրած կրից և նավթից։ Կիրը շփվելով ջրի հետ, առաջացնում է ջերմություն, որի շնորհիվ բռնկվում են նավթի գոլորշիները և այրվում ուղղակի ջրի վրա։



# «Մնջախաղը նման է երաժշտության»

«Մարդկային կյանքը պարզունակ չէ. ամեն մեկի կյանքում լինում են պահեր, երբ թվում է, թե ծառերն աճում են արմատներով դեպի վեր, տները կանգնած են ծխնելույզների վրա և մուտքի դռները տանում են սև տիեզերք, թե ամպերը նստել են գետնին, իսկ ասֆալտն իր ողջ ծանրությամբ կախված է մեր գլխավերևում և սպառնում է ընկնել...

Եվ հենց այդ պահին հայտնվում է ծաղրածուն: Նա գալիս, կանգնում է ձեռքերի վրա, վերև է բարձրացնում ոտքերը՝ հսկայական կոշիկներով, ու ամեն ինչ իր տեղն է ընկնում. ամպերը կապույտին են տալիս երկնքում, մուտքի դռները տանում են փողոց կամ այգի, հողը ներքևում է, իսկ երկինքն այնտեղ՝ ուր միշտ եղել է»:

ԼԵՈՆԻԴ ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Շատերը նրան տեսել են միայն կապույտ էկրանին, բայց սիրում ու մեծարում են որպես կրկեսի ծաղրածուի:

Ծնվել է Ենգիբարյանը Մոսկվայում, 1935 թ. մարտի 15-ին: Մանկությունն անցկացրել է մոսկովյան հին թաղամասերից մեկի փայտյա մի տնակում, որի տեղում այսօր օլիմպիական համալիրն է:

Դեռ դպրոցում զբաղվում էր սպորտով, բռնցքամարտի սեկցիայի պարապմունքների էր հաճախում: Շատերն էին զարմանում, թե մարմնով այդքան նվազ, նուրբ պատանին ինչպե՞ս է զբաղվում բռնցքամարտով և ինչպե՞ս է հաղթանակներ տանում: Իսկ նա հրճվում էր, որ կարողանում է զարմացնել:

Երազում էր ծովային դառնալ, հետո՝ բնախույզ-երկրաբան: Ու մի օր էլ հայտնեց մոտիկներին. «Ընդունվել եմ կրկեսային և էստրադային արվեստի ուսումնարան, ծաղրածու եմ դառնալու»:

Պատմում են, որ մարզադահլիճից նրան չէին կարողանում քշել և, եթե հաջողվում էր, այնուհետև հարկ էր լինում ուսումնական մանեժից վռնդել: Լյոնյան անհագուրդ ցանկություն ուներ տիրապետել կրկեսային բոլոր ժանրերին: Նա գտել էր այն, ինչը երջանկություն էր պարգևում իրեն՝ սիրած գործ:

Նա աշխատում էր գիշեր-ցերեկ: Կարողանում էր փայլել կրկեսային ցանկացած ժանրում, նա և՛ ակրոբատ էր, և՛ ձեռնածու, և՛ լարախաղաց: Ինչի՞ համար էր այդ բոլորը, եթե որոշել էր ծաղրածու դառնալ:

Լյոնյան գիտեր, թե ինչի: Իսկական ծաղրածու դառնալու համար պետք էր ունենալ

անքերի մարզված մարմին և, իհարկե, ասելիք։

Նա ուներ ասելիք։ Նա վաղուց արդեն մտածում էր ծաղրածուի իր կերպարի մասին. «Ես ուզում էի, որ Լյոնյան անպայման համեստ մարդ լինի։ Ամենաբարդ կրկեսային համարանքները նա կատարում էր առանձին կարևորություն չտալով արածին...։ Նա ասպետ էր, միշտ պատրաստ պաշտպանելու թույլին, կնոջը»։

Ահա նա բռնցքամարտիկ է։ Հակառակորդն անհամեմատ ուժեղ է, մարմնեղ։ Իր ծնկները դողում են, վարանում է մարտն ընդունել։ Բայց ահա հանդիսատեսներից մի աղջիկ վարդ է նետում մրցահարթակ, կարմիր վարդ. «Սա ի՞նձ»,— չի հավատում պատանին։ «Իհարկե քեզ»,— քաջալերում է աղջիկը։ Լյոնյան մոտենում է, որ վերցնի, հակառակորդը անտարբերությամբ ոտքով մի կողմ է հրում վարդը՝ պատրաստվելով մարտի։ Լյոնյան վրդովված է։ Նա առանց այլևայլության ընդունում է մարտը և մտնում է կռվի մեջ։ Նա պաշտպանում է վարդը, այդ աղջկան, գեղեցիկը։ Նա հաղթում է, բայց չէ՞ որ մրցամարտը կարող էր և այլ կերպ ավարտվել...

Բազմազան էին Ենգիբարյանի մանրապատումները։ Ամեն անգամ նրա հերոսը ներկայանում էր մի նոր կողմով։ Մերթ չարաճճի էր և ոչ մի կերպ չէր ուզում ենթարկվել մանեժի տեսուչին, մերթ չափազանց հետաքրքրասեր էր և ընկնում էր ծիծաղելի դրության մեջ, մերթ ասպետ էր քաջարի, մերթ անհույս սիրահար... Նա պատմում էր իր մասին, իր ծանոթների մասին։ Պատմում էր անձայն, անխոս, իսկ մարդիկ շունչները պահած սպասում էին նրա ամեն մի քայլին, ընկնում հրաշքի մեջ, ծիծաղում։ Դա պանտոմիմ էր առանց բառերի։ Ներկայացման ժամանակ նա մտնում էր սովորական մարդկանց մեջ, նրանց հետ հուզվում և ուրախանում, թախծում և ծիծաղում։

«Մնջախաղը շատ նման է երաժշտության,— ասել է հենց ինքը՝ Ենգիբարյանը։— Մի՞թե մնջախաղը մունջ արվեստ է։ Մի՞թե դուք չեք լսում, թե ինչպես են տնքում Մարսել Մարսոյի ձեռքերը՝ ձգտելով ծռել-բացել անհամար վանդակների երկաթե ճաղերը։ Ձեզ չի՞ խլացնում ամբոխի մռնչյունը, մնջկատակն առաջին անգամ կյանքում կռվում է ցուլի հետ։ Եվ ձեզ չի՞ խլացնում ամբոխի սուլոցը, երբ մեր հերոսն անհաջողության է մատնվում։

Թնդում և աղմկում է, ծիծաղում և ծափահարում է, շաչում է կայսրաններով ու երգում է բեմահարթակից, կամացուկ սիրո խոսքեր է շշնջում։ Մնջկատակի համար դժվար չէ տեղափոխել մեզ այս մեծ աշխարհի մի ծայրից-մյուսը, պատմել մեծի և փոքրի մասին, ողբերգականի և ծիծաղելիի մասին, պատմել աշխարհի մասին, որտեղ կողք-կողքի ապրում են չարն ու բարին, այն մասին, որ մարդն անպայման կհաղթի և՛ իր մեջ, և՛ իրենից դուրս գտնվող չարին»։

1964 թվականին Ենգիբարյանը Պրագայում մասնակցեց ծաղրածուների միջազգային մրցույթին և շահեց Մեծ մրցանակը։ Այդ ժամանակ էր, որ չեխ հայտնի արտիստ-տեսաբան Միրոսլավ Հորնիչեկն ասաց. «Հազարները եկան, խոսեցին ու ոչինչ չասացին։ Նա եկավ, լռեց և ամեն ինչ ասաց»։

«Հրաշք հայորդի», «Զայլինի հետնորդ», «Ծաղրածու՝ աշունը սրտում», «Բարի ծաղրածու», «Ինտելեկտուալ ծաղրածու»,— գրում էին հիացած լրագրողները։

Այս մրցույթից և 1966-ին Եվրոպայի լավագույն մնջակատակը ճանաչվելուց հետո, Ենգիբարյանի հռչակը դարձավ համաշխարհային։ Նա նկարահանվում էր ֆիլմերում, ելույթ ունենում հեռուստատեսությամբ, շրջագայում ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում։ Եվ որտեղ էլ լիներ, շարունակում էր գրել կրկեսային մանրապատումներ իր և մյուս արտիստների մասին, նովելներ, արձակ բանաստեղծություններ, հումորեսկներ։

«Առավոտը միշտ պետք է անցկացնել գրասեղանի առաջ, նույնիսկ եթե ոչինչ չի դուրս գալիս գրչից տակից... Ես գիտեմ, եթե ամեն օր չփորձես ինչ-որ բան հորինել, ստեղծել, ուղղակի մտածել գրասեղանի մոտ նստած, հանդիսատեսի մոտ քեզ կզգաս դատարկ։ Իսկ այդ դեպքում լավ է ընդհանրապես դուրս չգալ տնից»։

Ենգիբարյանը գրում էր, սիրում էր երգել, ձայնապնակներ և ծաղրանկարներ էր հավաքում և աշխատում էր անհավատալի շատ, անհագորեն։ Եվ, ինչպես միշտ, ձգտում էր ստեղծել նոր բան, անել այն, ինչ մինչ այդ ոչ ոք չի արել։

1970 թվականին նա ստեղծեց «Լեոնիդ Ենգիբարյանի մոսկովյան էքսցենտրիկ թատրոն» մեկ դերասանի թատրոնը։ Դա յուրատեսակ համադրություն էր՝ կրկեսային և էստրադային արվեստների, գրականության, երաժշտության։

«Ուրախի և տխուրի մասին», «Ծաղրածուի հրաշքները» ներկայացումները նայեցին մեր երկրի տարբեր քաղաքներում։ 1972 թ. ամռանը Ենգիբարյանը պատրաստվում էր այն ներկայացնել Մոսկվայի, Լենինգրադի, հետո նաև մերձբալթյան քաղաքների հանդիսատեսի դատին, բայց չհասցրեց...

Այսօր նա 50 տարեկան կլիներ, բայց նա չանցավ 37-ը։

ԼԻԼԻ ՍՏԵՓԱՆՅԱՆ






Թերթիկները այնպես վերադասավորել, որ 6 հորիզոնականների, 6 ուղղահայացների և 2 անկյունագծերի վրա գտնվեն երկու նույն ձևի և երկու նույն գույնի պատկեր։

| | | | |
|---|---|---|---|
| 31 | 33 | 35 | 37 |
| 39 | 41 | 43 | 45 |
| 47 | 49 | 51 | 53 |
| 55 | 57 | 59 | 61 |

Վանդակներում նշված թվերը վերադասավորել այնպես, որ թե հորիզոնական, թե ուղղահայաց ուղղություններով և թե անկյունագծերով չորս թվերի գումարը միշտ հավասար լինի 184-ի։

Առաջարկը՝ ՍՈՒՍԱՆՆԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ
Կիրովական, Րաֆֆու անվան № 49 միջն. դպրոց, 8-րդ դասարան

**«ՊԻՈՆԵՐ» № 5-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ**

1. Ավետիսյան, 2. Վուչետիչ, 3. Մինսկ, 4. Փառքի, 5. Ծովակալ, 6. Շտիրլից 7. Փող, 8. Խանզադյան, 9. Թեհրան, 10. Պրագա, 11. Սերժանտ, 12. Օրյոլ, 13. Էշելոն։

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

*Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։ Հեռախոսներ՝ 56-92-72, 58-08-89, 56-14-96, 56-43-38։*

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հանձնված է շարվածքի 18. 03. 1985 թ.։ Ստորագրված է տպագրության 24. 05. 1985 թ.։ ՎՖ 07365։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։ Մամ. 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68552։ Պատ. 569։ Գինը՝ 15 կ.*

Сдано в набор 18.03.85 г. Подписано к печати 24.05.85 г. Формат 70×100 1/16. ВФ 07365. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3.0 уч.-изд. листа. Тираж 68552.. Заказ 569. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.



ԱՐՇԻԼ ԳՈՐԿԻ (ՈՍՏԱՆԻԿ ԱԴՈՅԱՆ) (1904—1948 Թ.Թ.)
«ՆԿԱՐԻՉՆ ՈՒ ԻՐ ՄԱՅՐԸ» (1926—32, ԱՄԵՐԻԿՅԱՆ ԱՐՎԵՍՏԻ ԹԱՆԳԱՐԱՆ, ՆՅՈՒ ՅՈՐՔ)

---

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.:



ԼԵՎՈՆ ՀԱԿՈԲՅԱՆ

# Ողջույն

Մայր արեգակը անքուն ու անմար
Լույս է ճառագում աշխարհի համար:
Ծովը ծփում է, զովություն բերում,
Դաշտը ծաղկածուփ բույրով է բուրում:
Արտն է հացառատ՝ երգեհոն, քնար,
Ծառը լեռան հետ՝ աննման նկար:
Անձրևը՝ բարիք, լիություն շռայլ,
Վառ ծիածանը՝ գույներ հրավառ:
Գետը՝ քաղցրանուն երգ ու խնդություն,
Լիճը՝ հուզառատ անդորր, մեղմություն:
Հավքը՝ երազանք, մտքի սլացում,
Կապույտ երկինքը՝ անհուն հիացում...
Իսկ դու, սիրելիս, այս ամենի մեջ,
Ապրիր, կառուցիր, երազիր անվերջ:

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.　　ԻՆԴԵՔՍ՝ 77806